# ՅԱՌԱՋ
ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

HARATCH — Fondé en 1925 — R. C. S. 376.286

Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN

17, Rue Damesme — PARIS (13)

Վեցամս. 800 փր., Տար. 1600, արտ. 2500 փր.

Tél. GOB. 15-70 — Գին 7 փր. — C.C.P.Paris 1678-63

Mardi 1er AOUT 1950 — Երեքշաբթի 1 ՕԳՈՍՏՈՍ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No.6217–Նոր շրջան թիւ 1628

Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

## "ՅԱՌԱՋ"Ը 25 ՏԱՐԵԿԱՆ

1925 օգոստոս 1ին էր որ լոյս կը տեսնէր այս թերթին առաջին թիւը:

Ուրեմն ՅԱՌԱՋը 25 տարեկան է այսօր, եթէ չհաշուենք պատերազմին չորս տարիները, երբ դադրեցաւ ինքնակամ:

Պարագաները թոյլ չեն տար ոչ բացառիկ թիւ հրատարակել, — ինչպէս ըրինք տասնամեակին առթիւ — ոչ ալ 25ամեակը տօնել:

Գոհանանք արձանագրելով քանի մը խորհրդածութիւններ, ցարդ կատարուած աշխատանքի մասին:

Հրապարակ հանուած՝ երկար վարանումներէ վերջ, եւ առանց չուայլաբան հաւաստիքներու, այս թերթին առաջին հոգն եղաւ դառնալ կենդանի կապը եւ բեմը գաղութի մը որ նոր տուն-տեղ կ'ըլլար արեւմտեան Եւրոպայի պողոտաներուն վրայ:

Ան շուտով դարձաւ ոչ միայն մշակոյթի վառարան մը, այլ եւ ներշնչարանը խանդավառ երիտասարդութեան մը որ հորիզոն կը փնտռէր:

Ամբողջ սերունդ մը թրծուեցաւ ՅԱՌԱՋի միջոցաւ, որ կոչուած էր հայրենիքի եւ ազատութեան գաղափարները տարածել համաձայն Հ. Յ. Դաշնակցութեան դաւանանքին:

Տարէց թէ երիտասարդ, բազմաթիւ եւ բազմազան ուժեր իրենց միտքն ու եռանդը, գրիչն ու աշխատանքը տրամադրեցին, անոր զարգացման համար:

Միեւնոյն ատեն նոր տաղանդներ, վաւերական արժէքներ ծաղկեցան իր էջերուն մէջ:

Մշակոյթի ճակատին վրայ, ՅԱՌԱՋը ջանաց նոր ակօսներ բանալ, որքան թոյլ կուտային օրաթերթի մը պայմանները:

Ամէն պարագայի մէջ, իր ձգտումն եղաւ ինքնուրոյն գիծ մը ներմուծել: Թարմացնել, ինչպէս գաղափարներու, նոյնպէս նիւթերու մշակման եղանակները: Լեզուի շնորհ փնտռել նոյն իսկ հասարակ թղթակցութեանց մէջ:

Եթէ այս առաջադրութիւնը տեսակ մը դպրոց հաստատեց, երբեք արգելք չեղաւ ստեղծագործութեանց ազատ զարգացման:

Կը բաւէ թղթատել մանաւորապէս նախապատերազմեան հաւաքածոները, երբ թերթին ծաւալը թոյլ կուտար ամբողջ սիւնակներ տրամադրել գրական արտադրութեանց, ինչպէս ընկերային եւ քաղաքական վերլուծումներու:

Դժբախտաբար միջոցներ պակսեցան գրքի վերածելու բազմաթիւ պիտանի նիւթեր, որոնք պիտի կրնային գրադարան մը կազմել:

Այսօրուան փոքր ծաւալին մէջ ալ, որ ամէնէն աւելի խմբագրութեան ցաւ կը պատճառէ, նոյն ինքնուրոյն ոգին եւ գիծն են որ կ'առաջնորդեն մեզ:

ՅԱՌԱՋը 25 տարի դիմացաւ շնորհիւ հաւատարիմ ընթերցողներու բազմութեան մը: Ինչպէս պատերազմէն առաջ, նոյնպէս այսօր իր սպառումը կը գերազանցէ ուրիշ որ եւ է հրատարակութիւն:

Միայն այս իրողութիւնը պիտի բաւէր իբրեւ պատասխան այն գռեհիկ վերագրումներուն որ կը նորոգուին պարբերաբար, արգահատելի դարձնելով անոնց հեղինակները:

Գիտակից եւ հայրենասէր զանգուած մըն է որ կանգուն կը պահէ ՅԱՌԱՋը, եւ պիտի պահէ մինչեւ լաւագոյն օրեր:

Այդ զանգուածին մաս կը կազմեն իր հաւատարիմ աշխատակիցներն ու աշխատաւորները, որոնց շատերուն մազերը ճերմկեցան այս աշխատանքին մէջ:

Քսանըհինգ տարուան վարկը ուժ կուտայ մեզի մնալ միշտ պատնէշին վրայ: Գործել նոյն պարտաճանաչութեամբ: Ջգտելով բան մը աւելի տալ, մշակոյթի թէ քաղաքական դաստիարակութեան ճամբուն վրայ:

Այս տողերը գրած ատեն գիտենք թէ որքան ծանր կը կշռեն տնտեսական հոգերը, այնպիսի ատեն մը երբ կը բազմապատկուին քաղաքական տագնապները: Երբ տեղական թերթերուն համար անգամ սովորութիւն դարձեր է միլիոններ հաւաքել, դիմանալու համար:

Կը հաւատանք թէ ընթերցողներու եւ բաժանորդներու անսասան եւ յարաճուն համակրանքը պիտի բաւէ դիմանալու այդ նոր հոգերուն: Ինչպէս լման 25 տարի, առանց որ եւ է հաստատուն եկամուտ ունենալու:

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ՅՈՐԴՈՐ

Կիլիկիոյ Գարեգին Ա. Կաթողիկոսը կիրակի օր նախագահեց Փարիզի եկեղեցական արարողութեանց եւ քարոզեց:

Կաթողիկոսը սպիտակ շուրջառով գրաւած էր աջակողմեան աթոռը, իր քով ունենալով Գերմանիոյ հոգեւոր հովիւ Գրիգոր Ծ. վրդ. Շահլամեանը, իսկ ձախակողմեան աթոռը կը գրաւէր Արտաւազդ արք.: Պատարագիչն էր Դերենիկ եպս.:

« Հայր Մեր »էն առաջ Գարեգին Ա. քարոզ մը խօսեցաւ առակով մը: Օր մը երկինք եւ երկիր վէճի բռնուեցան: Երկինք կը պարծենայ թէ արեւը, լուսինը, աստղերը բոլորն իրն են, իսկ Երկիրը բան մը չարժեր: Երկիրը կը պատասխանէ թէ ինք ալ արժանիքներ ունի, գետերն ու ծովերը, ծառերն ու կանաչութիւնները, բերքերն ու պտուղները և շատ մը բարիքներ որ երկրէն կը բըխին, թէ երկինքը շատ պարծենալու իրաւունք չունի: Երկինքը կը խորհի, իրաւունք կուտայ երկրին, եւ այն ատեն, երկինք աւելի կը խոնարհի, երկիրը աւելի կը բարձրանայ, եւ այսպէս երկնքի ամպերը եւ երկրին բարձունքները եղբայրական համբոյր կուտան իրարու հորիզոնին վրայ:

Այս օրինակը հիմ բռնելով, Կաթողիկոսը եղբայրութեան ազդու կոչ մը ուղղեց ժողովուրդին: Պահ մը յանկարծ ոտքի կանգնելով գոչեց.

— Հայերը ընդունակ ժողովուրդ են. այդ ընդունակութիւնները ինչի՞ պիտի ծառայեն, երբ մենք չունենանք ընդունակութիւնը իրար սիրելու, իրար յարգելու, իրար հասկնալու: Եղբայրութիւնը, իրերահասկացողութիւնը, իրերօգնութիւնը, սէրն ու հաւատքն են որ պիտի ապրեցնեն մեզ:

X Լիոնի մեր թղթակիցը կը գրէ թէ Կաթողիկոսը Նիսէն Լիոն հասած ատեն, եկեղեցի առաջնորդուելով, նոյն յորդորներն ուղղեց հաւատացեալներուն: Բարի գալուստի գացած էին Ազգային Միութեան վարչութիւնը, բողոքական եւ կաթոլիկ համայնքներու ներկայացուցիչը եւ ֆրանսական թերթի մը թղթակիցը որ ուզեց Կաթողիկոսին ստորագրել տալ թուղթ մը, բայց կարելի չեղաւ:

## Քաղաքացիական կռի՞ւ Պելժիքոյ մէջ

Վերջին տեղեկութեանց համաձայն, Պելժիոյ կացութիւնը այնքան ծանրացած է որ, թագաւորը կը խորհի հրաժարիլ, յեղափոխութիւնը կանխելու համար: Նախարարական խորհուրդը բացառիկ նիստի հրաւիրուած է:

Ընկերվարական կուսակցութեան վարիչը ըսաւ թէ քաղաքացիական պատերազմ կրնայ ծագիլ այսօր, երեքշաբթի, եթէ վճռական միջոցներ ձեռք չառնուին:

Լէոփոլտ Գ. կիրակի օր պալատ հրաւիրեց երեք գլխաւոր կուսակցութեանց վարիչները, գործադուլներուն եւ խռովութեանց վերջ տալու համար: Ընկերվարական առաջնորդը, նախկին վարչապետ Սփաք, մերժեց այս հրաւէրը, համաձայն իր կուսակցութեան տուած որոշման: Այս ձեռնարկը փորձ մըն էր վերահաստատելու ազգային միութիւնը:

Մինչ այս մինչ այն, խռովութիւնները կը շարունակուին բոլոր գլխաւոր քաղաքներուն մէջ: Երեք հոգի սպաննուեցան Լիէժի մէջ, ոստիկան զօրքը կրակ բացած ըլլալով: Ընկերվարական քաղաքապետն ալ վիրաւորուեցաւ: Լիէժի 450,000 բնակիչներէն 150,000ը գործադուլ յայտարարած են: Ընկերվարական պատուիրակութիւն մը ներկայանալով վարչապետին, ուժգնօրէն բողոքեց ոստիկանական խստութեանց դէմ: Մեծ պատրաստութիւններ տեսնուած են, Պրիւսէլի վրայ քալելու համար այսօր, երեքշաբթի: Կառավարութիւնը արգիլած է բոլոր ժողովները: Զինուորներ դիրք բռնած են մայրաքաղաքին շուրջը: Ընկերվարականները կը հաւաստեն թէ 50,000 քաղաքացիներ Պրիւսէլի վրայ պիտի քալեն, հակառակ բոլոր արգելքներուն: Պ. Սփաք յայտարարեց. — « Յեղափոխութեան մէջ ենք »: Պրիւսէլի մէջ թագաւորին հակառակորդները ռումբ մը նետեցին ոստիկան-զօրքին վրայ: Երթեւեկը խանգարուած է Պելժիոյ, Ֆրանսայի, Անգլիոյ եւ ուրիշ երկիրներու միջեւ:

## ՔՈՐԷԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

### «Ցմահ կռուիլ»

Քորէայի ամերիկեան բանակին հրամանատարը, զօր. Ուոքըր հետեւեալ հրամանը հաղորդեց իր զինուորներուն.

— « Անկարելի է անձնատուր ըլլալ: Պէտք է կռուինք ցմահ, առանց թիզ մը հող լքելու »:

Պաշտօնական զեկոյցը կ'ըսէ թէ այս հրամանին վրայ, ամերիկեան զինուորները բուռն յարձակողականի մը դիմելով գրաւեցին Զիրիյ քաղաքը, Քումչոնէն 20 քիլոմեթր դէպի հարաւ: Ամերիկեան թնդանօթները եւ օդանաւերը անխնայ կրակ տեղացին քաղաքին վրայ եւ զօրքը արագօրէն յառաջ խաղալով, գրաւեց շրջակաները: Հիւսիսային Քորէացիներն ալ իրենց կարգին գրաւեցին Քոչանկ քաղաքը, երկու օրուան կատաղի կռիւներէն վերջ:

Հարաւ. ճակատին վրայ, կարմիր զօրամասերը գարկին ծովեզերեայ Ջինքու քաղաքը, որ 80 քիլոմեթր հեռու է ամերիկեան գլխաւոր խարիսխէն՝ Ֆուզանէն: Քաղաքին պահակազօրքը պատասխանեց հակայարձակում գործելով:

Վերջին լուրերու համաձայն, հիւս. Քորէացիները հինգ օրէ ի վեր կը շարունակեն իրենց ընդհ. յարձակողականը, բոլոր ճակատներուն վրայ: Կեդրոնական ճակատին վրայ իրենց գլխաւոր ճիգն է պաշարել ամերիկեան ձախ թեւը: Ամերիկացիները անհամբեր կը սպասեն երկու օդնական զօրաբաժիններու որոնք վճռական դեր պիտի կատարեն այս ճակատամարտին մէջ:

Արեւելեան ճակատին վրայ, հարաւ. Քորէացիները կը փորձեն ետ առնել Եոնկտոքի նաւահանգիստը:

Իրազեկներ կը հաւաստեն թէ հիւս. Քորէացիներուն հրամայուած է գրոհ տալ դէպի Ֆուզան: Իրենց զինուորներուն թիւը կը հաշուեն 200 հազար: Ամերիկացիներն ալ կը խոստովանին թէ ամենածանր ճնշումն է որ կը կրեն այս միջոցին: Զօր. Ուոքըր բացատրեց թղթակիցներուն թէ « ամէնէն տագնապալի » շրջանին հասած են, բայց ինք բացարձակապէս վստահ է թէ պիտի դիմանան մինչեւ որ օգնական ուժերը հասնին:

X Զօր. Մէք Արթըրի խորհրդականները կը հաւաստեն թէ ժամանակը այժմ իրենց համար կը գործէ: Այս լաւատեսութիւնը հիմնուած է օգնական ուժերուն եւ նոր հրասայլերուն վրայ: Միւս կողմէ, կը հաստատուի թէ յուլիս 23էն ի վեր կատարուած օդարշաւները շատ ծանր կորուստներ պատճառած են հիւս. Քորէայիներու, խանգարելով հաղորդակցութիւնները եւ պարենաւորումը:

Ամերիկացիներուն հաշուով, հիւս Քորէայինները մինչեւ հիմա կորսնցուցած են 80 օդանաւեր, որ գրեթէ իրենց ամբողջ օդատորմիղը կը կազմէր: Զինուորներու կորուստը կը հաշուեն 30 հազարէն 40,000 սպաննեալ կամ վիրաւոր: Նոյն աղբիւրին համաձայն, հիւս. Քորէացիներու 300 ռուսական հրասայլերէն 170ը քանդուած են:

### Ի՞ՆՉ ՊԻՏԻ ԱՌԱՋԱՐԿԷ ՄԱԼԻՔ

Ապահովութեան Խորհուրդը նիստի հրաւիրուած է այսօր, երեքշաբթի, նախագահութեամբ խորհրդային պատուիրակին՝ Պ. Եակոբ Մալիքի:

Քաղաքական շրջանակներու մէջ զանազան ենթադրութիւններ կ'ըլլան Խ. Միութեան դիտումներու մասին: Կը կարծուի թէ Պ. Մալիք հետեւեալ երեք առաջարկները պիտի ներկայացնէ. —

1. Անմիջապէս դադրեցնել Քորէայի կռիւը:— 2. Զինադադարի յանձնախումբ մը կազմել մասնակցութեամբ խորհրդային պատուիրակի մը, ապահովելու համար բոլոր զինեալ ուժերու պարպումը եւ ցրուումը: — 3. Ազատ ընտրութիւններ կատարել Քորէայի մէջ, Ազգաժողովին հովանաւորութեամբ:

Անշուշտ Մոսկուա պիտի պահանջէ նաեւ Ապահովութեան Խորհուրդին մէջ ընդունիլ նոր Զինաստանը, դուրս ձգելով ազգայնական պատուիրակութիւնը:

Բոլոր տեղեկութիւնները կը հաստատեն որ եթէ Պ. Մալիք փորձէ նոր դժուարութիւններ ըստեղծել, Ազգաժողովը անդրդուելի պիտի մնայ, շարունակելով իր որոշումներուն գործադրութիւնը: Միւս կողմէ կը կարծուի թէ Հնդկաստան նոր ձեռնարկներ պիտի կատարէ, թիւրիմացութիւնները հարթելու եւ միջին ճամբայ մը գտնելու համար:

Եթէ Պ. Մալիք առաջարկէ յետաձգել Ապահովութեան Խորհուրդին նիստերը, Մ. Նահանգները երբեք տեղի պիտի չտան: Անոնց գլխաւոր պայմանն է հիւս. Քորէացիները վերադարձնել նախկին սահմանագլուխը, որ եւ է բանակցութենէ առաջ:

Յոռետեսներ կը կարծեն թէ ի վերջոյ կարմիր Զինաստանն ալ կրնայ միջամտել, աւելի բարդացնելով կացութիւնը:

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

# ՊԱՏԵՐԱ՞ԶՄ, ԹԷ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ

Համաշխարհային հանրային միտքը եւ անոր արտայայտիչ մամուլը, վերջերս առանձնապէս, լուրջ մտահոգուած են պատերազմի խնդրով։ Ոմանք կը կարծեն, թէ պատերազմը անխուսափելի է եւ այսօր – վաղը կարող է պայթիլ. ուրիշներ պակաս յոռետես են եւ կը խորհին, թէ պատերազմի անմիջական վտանգ գոյութիւն չունի։ Ոմանք այն մտքի են, թէ անհրաժեշտ է, առանց ուշացնելու, պատերազմի դիմել մէջտեղէն վերցնելու համար բոլշեւիկեան չարիքը, ուրիշներ համոզուած են, թէ բոլշեւիզմի հաշուեյարդարը հնարաւոր է կատարել խաղաղ միջոցներով։ Ըստ ոմանց բոլշեւիզմ եւ ժողովրդապետութիւն չեն կարող կենակցիլ երկար ժամանակ եւ անհրաժեշտօրէն «պաղ» պատերազմը պիտի վերածուի «տաք» պատերազմի. ուրիշներ կը հաւատան, թէ ընկերային – քաղաքական երկու դրութիւնները կրնան տեւականօրէն ապրիլ կողք – կողքի, առանց պատերազմի դիմելու։

Այս մտածումներու մէջ որքան իրատեսութիւն կայ, նոյնքան եւ թերեւս աւելի՝ բարեկամեցողութիւն։ Զարմանալի չէ, որ պատերազմի սարսափէն ահաբեկուած մարդկութիւնը կը փնտռէ աննախընթաց թնճուկէն ելք մը՝ խուսափելու համար նոր աղէտներէ։ Կը տենչայ երկրագունդի երեսին հաստատել տեւական խաղաղութիւն մը, զերծ մնալ պատերազմի ահաւոր ուրուականէն։ Եւ սակայն՝ պատերազմի ուրուականը կախուած է մարդկութեան գլխին ։

Պատերա՞զմ, թէ խաղաղութիւն ։

Առարկայօրէն երկու հնարաւորութիւններու մասին ալ կարելի է թեր եւ դէմ լուրջ հիմնաւորումներ բերել։ Լաւատեսները իրաւունք ունին, երբ կը պնդեն, թէ պատերազմը երկու կողմերու համար ալ շահաւոր եւ ցանկալի չէ։ Սովետները պատերազմի պէտք չունին, որովհետեւ խաղաղ միջոցներով ալ ահագին նուաճումներ կատարած են եւ ի վիճակի են նոր յաջողութիւններ ձեռք բերելու։ Միւս կողմէն՝ անոնք տնտեսապէս ու ռազմապէս պատրաստ չեն չափուելու Ամերիկայի պէս հզօր ուժի մը հետ ։ Խորհրդ. Միութեան ներքին պայմաններն ալ, ինչպէս եւ Սովետներու կողմէ գրաւուած երկիրներու ներքին վիճակը թոյլ չեն տար նոր արկածախնդրութեան մը գիրկը նետուելու։ Սովետները պէտք չունին դիմելու պատերազմի, որու հետեւանքը կարող է ճակատագրական լինել իրենց համար։ Ընդհակառակն, իրերու առարկայական ընթացքը կը թելադրէ, որ անոնք ամէն կերպով զգուշանան պատերազմ հրահրելէ։ Ասով կը բացատրուի Սովետներու «խաղաղասիրութիւնը» եւ «պատերազմի հրձիգներու» դէմ յարուցած աղմուկը ։

Պատերազմէն կը խորշի եւ ժողովրդապետական աշխարհը, որ առարկայօրէն եւ ենթակայօրէն խաղաղասէր է եւ պատերազմի թշնամի։ Եւ եթէ ան այնպէս փութով կը զինուի ու պատերազմական պատրաստութիւններ կը տեսնէ, ատոր պատճառը ոչ թէ պատերազմի տենչն է, այլ պատերազմը անկարելի դարձնելու ձգտումը՝ համաձայն հին իմաստութեան թէ՝ եթէ կ'ուզես խաղաղութիւն, պատրաստուէ պատերազմի։ Եւ ժողովրդապետական սկզբունքի էութեան ու ոգիին ծանօթ մարդը իրաւունք չունի չհաւատալու, որ, այո, ժողովրդապետական ազգերը չեն պատրաստուիր յարձակողական պատերազմի համար. անոնց նպատակը ինքնապաշտպանութիւնն է։ Այն ահռելի ռազմական ուժը, որ, օրինակ, պատրաստած է Ամերիկան, Արեւմտեան Եւրոպայի զինումը ամերիկեան օժանդակութեամբ, նպատակ ունի ապահովել տեւական խաղաղութիւնը,, եւ ոչ թէ նոր պատերազմ հրահրել ։

Առարկայօրէն, ուրեմն, երկու հակամարտ կողմերն ալ, կը թուի թէ՝ շահագրգռուած են խաղաղութեամբ եւ սակայն՝ ամէնքը կը պատրաստուին պատերազմի, եւ պատերազմի ուրուականը սպառնալից՝ կախուած է մարդկութեան գլխին։ Պաշտօնական պատասխանատու անձեր կը հաւաստեն, թէ պատերազմը այսօր պակաս հաւանական է, քան երկու – երեք տարի առաջ, բայց հանրային միտքն ու մամուլը ներկայիս աւելի զբաղած են պատերազմի հարցով, քան երկու – երեք տարի առաջ։ Կը կարծուի, թէ ոչ ոք կ'ուզէ պատերազմ, բայց ամէնքը կ'ապրին պատերազմի սարսափի տակ։ Ի՞նչ է այս տարօրինակ երեւոյթի պատճառը։

Պատճառը այն է, որ պատերազմի ըլլալ – չըլլալը ամբողջապէս կախուած է ուժէ մը, որու վրայ ոչ ոք հաւատք ու վստահութիւն ունի։ Ամերիկա եւ Եւրոպա այլեւս գիտակցած են, որ Մոսկուայի խօսքերը զուրկ են արժէքէ, եւ անոր «խաղաղասիրութիւնը» ոչինչ կը նշանակէ։ Անոր խաղաղասիրութիւնը կրնայ ըլլալ եւ վարագոյր մը, որու ետեւը ծածկուած է պատերազմը։ Որովհետեւ վերջին հաշուով պատերազմը կամ խաղաղութիւնը ամբողջապէս կախուած են Մոսկուայէն ։

Կասկած չկայ, որ բոլշեւիկներու վերջնական նպատակը ժողովրդական կարգերու տապալումն է՝ համաշխարհային Սովետներու հաստատումով։ Այդ նպատակը, պայմաններու համեմատ, կարող է դառնալ անմիջական կամ յետաձգուիլ ժամանակի մը համար։ Խնդիր է, թէ ի՞նչ են Մոսկուայի հաշիւները. Փոլիտպիւրօն ինչպէ՞ս կը գնահատէ առարկայական պայմանները եւ երկու կողմերու ուժերու տեսակարար կշիռը։ Հարց մը, որուն ոչ ոք կրնայ ստոյգ պատասխան տալ, բացի Փոլիտպիւրօյէն։ Եթէ ան հասած է այն գիտակցութեան, թէ ժամանակն է հակառակորդը գլխատելու զէնքի ուժով, պատերազմը կը դառնայ անխուսափելի։ Եթէ անոր հաշիւներու մէջ չի մտներ անմիջական պատերազմը, խաղաղութիւնը ատեն մըն ալ կը շարունակուի։ Կարելի է թեր ու դէմ ենթադրութիւններ ընել Մոսկուայի հաշիւներու եւ դիտաւորութիւններու մասին, բայց ատոնք ենթադրութիւններու սահմանէն անդին չեն անցնիր։ Մերկ իրողութիւնը այն է, որ աշխարհի խաղաղութեան կամ պատերազմի բանալին կը գտնուի Մոսկուայի ձեռքը, իսկ Մոսկուան,, իր հնարաւորութիւններով ու դիտաւորութիւններով, ծածկուած է անթափանց քօղով մը ։

Եթէ Սովետները կ'ուզեն պատերազմ — կ'ունենանք պատերազմ ։

Եթէ Սովետները կ'ուզեն խաղաղութիւն — կ'ունենանք խաղաղութիւն ։

Այս է միակ պատասխանը տրուած հարցին՝ պատերա՞զմ թէ՝ խաղաղութիւն ։

(Խմբագրական ՀԱՅՐԵՆԻՔԻ)

# Անցեալ յուշեր Եըլտըզի դէպքէն

(Բ. եւ վերջին մաս)

«Դատաւորը կը հարցնէ թէ չէի՞ խղճահարեր արդեօք այս անմեղներուն այս սարսափելի տեսարանին առջեւ։ Պատասխանեցի թէ՝ անկեղծօրէն կը ցաւիմ այդ անմեղ զոհերուն վրայ, որովհետեւ անոնք ոչ մէկ մեղք ունէին զիրենք այս պատիժին արժանացնող, եւ թէ ես այդ զոհերէն ոչ մէկը կը ճանչնայի։ Ես շատ ու շատ կը ցաւիմ որ աշխարհի մեծագոյն ոճրագործը, Կարմիր Սուլթանը ազատած է այս պատուհասէն, որուն իրապէս արժանի էր եւ սակայն իր անհամար մեղքերուն պատիժը կը կրեն այս անմեղ զոհերը։ Թող այդ մեծ մարդասպանը խղճահարի ի տես այս անմեղ զոհերուն որոնք իր անհամար մեղքը կը քաւեն իրեն տեղ։

Այս խօսքերը համարձակ, բարձր եւ խիստ որոշ կերպով արտասանած էի, որովհետեւ գիտէի որ «Կարմիր Գազան»ը կը գտնուէր կարմիր վարագոյրի մը ետեւը եւ կը լսէր հարցաքննութիւններն ու ամբաստանեալներուն ըսածները ։

«Դատաւորը կը հարցնէ թէ ես իբրեւ Պելճիքացի, ի՞նչ կապ ունէի Հայերուն հետ։ Պատասխանեցի թէ՝ քաղաքակիրթ աշխարհը տեսած է այս մարտիրոս ազգին՝ Հայուն կրած տառապանքները՝ վայրագ ու վատթար կառավարութեան մը արիւնոտ լուծին տակ, տեսայ այդ անպաշտպան ազգին մորթոտուիլը արիւնարբու վեհապետի մը հրամանով եւ իբրեւ մարդ ու մարդասէր, չէի կրնար անտարբեր մնալ այդ ազգին տառապանքներուն հանդէպ։ Եւ հետեւաբար զոհեցի իմ խիստ հանգստաւէտ եւ շահաբեր գործս մարդասիրական այն մեծ գաղափարականին, որ կը յուսայի թէ՝ որոշ թեթեւացում մը կրնար բերել հայ տառապանքներուն մէջ ։

«Այս դատավարութենէն վերջ առաջնորդուեցայ բանտ ու սպասեցի ճակատագրական վախճանի մը ։

«Առտու մը արթննալէս վերջ լսեցի երկու բանտապահներու խօսակցութիւնը, լսելի ըլլալու չափ ցած ձայնով կ'ըսէին.

«Ասըլաճագ, ասըլաճագ», (պիտի կախուի, պիտի կախուի)։ Հասկցայ այլեւս թէ մահուան դատապարտուած էի, թէեւ պզտիկ յոյս մըն ալ ունէի ազատ արձակուելու, որովհետեւ բանտապահներուն այդ խօսքը կրնար ըլլալ սոսկ իրենց անձնական կարծիքը։ Բայց քանի մը օրեր վերջ բանտը եկաւ Ֆրանսայի Պոլսոյ դեսպան Պ. Պոմփառ, որ հաղորդեց ցուրտ ու ահաւոր լուրը՝ մահուան դատապարտուած էի։ Առանց պաղարիւնութիւնս կորսնցնելու, անմիջապէս խնդրեցի իրմէն, որ գէթ պառաւ մօրս վերջին նամակս գրելու եւ անկէ պատասխան մը ստանալու համար միջոց տրուէր ինծի մահավճռիս գործադրութենէն առաջ, խնդրեցի, որ ինք միջամտէր Թուրք արտաքին գործոց նախարարութեան մօտ, այդ խնդրանքիս գոհացում տալու համար ։ Յաջորդ օրն իսկ Պ. Պոմփառ եկաւ հաղորդելու թէ ինծի շնորհուած էր միջոց՝ նամակ գրելու եւ պատասխան ստանալու համար։

«Նամակս Անվէրս հասած օրն իսկ ամբողջ Պելճիքան տակնուվրայ կ'ըլլայ՝ մահավճռիս լուրը կայծակի արագութեամբ տարածուելով ամէն կողմ։ Կատաղի ամբոխը կը պաշարէ Թուրք հիւպատոսարաններն ու դեսպանատունը, եւ կ'որոշէ օդը հանել զանոնք, երբ մահավճռիս գործադրութեան լուրը հասնի Պելճիքա։ Անզուսպ ամբոխին կատաղութիւնը կարելի չըլլար զսպել, պելժիական կառավարութիւնը անզօր կը զգայ ինքզինք ու կը դիմէ Ֆրանսական կառավարութեան, խնդրելով, որ ազդու միջամտութիւն մը ընէ Բարձրագոյն Դրան մօտ, զիս ազատ արձակելու եւ քաղաքական հաւանական բարդութեանց առաջքն առնելու համար ։

Կ. Պոլիս կը հասնի զգայացունց լուր մը, որուն համաձայն այդ քաղաքին երեք կարեւոր կէտերուն վրայ աւերիչ ռումբեր պիտի պայթէին, եթէ իմ մահավճիռս գործածուի ։

«Ֆրանսական կառավարութեան միջամտութիւնը եւ այդ լուրին տպաւորութիւնը կ'ունենան իրենց անմիջական արդիւնքը։ Քիչ ատենէն ընդհ. հսկողութեամբ կ'առաջնորդուիմ Սիրքէճիի կայարանը, ուրկէ մեկնելով կը հասնիմ Վիէննա, ուր դրամս կը հատնի։ Բայց Կովկասէն կը ստանամ չէք մը, որուն շնորհիւ կը հասնիմ Անվէրս»։

Այս յոյժ հետաքրքրական պատմութեան յաջորդող սուրճի պատուասիրութենէն եւ մտերմական այնքան տաք խօսակցութենէն վերջ Էդուարդ Ժորիս հպարտութեամբ ցոյց տուաւ ինծի իր փառաւոր գրադարանը, զոր իրեն նուիրած էր Հ. Յ. Դաշնակցութիւնը, ի նշան երախտագիտութեան եւ վարձ անոր կատարած ճակատագրական ծառայութեան եւ կորսնցուցած փայլուն գործին ։

Երեք ժամուան մտերմիկ տեսակցութենէ մը վերջ հրաժեշտ կ'առնեմ այս պատուական մարդասէրէն եւ իր համակրելի տիկինէն, որ մասնակցած էր այդ դատավարութեան, բայց յաջողած էր փախչիլ իր շունին հետ, զոր միասին բերած էր Անվէրս ։

Յաճախ իրենց այցելելու խոստումով կը ստանամ իր այցետոմսը, որ 37 տարիէ ի վեր պահուած մնացած է ցարդ անտիպ եղող ձեռագիր դիւանական բառարանիս մէջ ։

Լսեցի որ երկրորդ համաշխարհային պատերազմի միջոցին մեռած է Հայուն պատուական այս բարեկամը ։

Ֆրէզնօ

Յ. Գ. ՊԱՊԻՍԵԱՆ

# Գոհ չեն ամերիկեան օգնութենէն

Թուրք ծանօթ հրապարակագիր Ապիտին Տավէր նորէն կը գանգատի Ամերիկացիներէն (Ճիւմհուրիյէթ, 22 Յուլիս).—

— Ամերիկեան կառավարութիւնը իբր զինուորական օժանդակութիւն որոշեր է մօտերս հինգ թորփիլահալած եւ երկու ընդծովեայ տալ Յունաստանի ։

Հապա մե՞նք, Թուրքը նաւատորմին ի՞նչ պիտի տան։ Մենք կը փափաքինք որ Հելլէն նաւատորմը զօրանայ, բայց Թուրք նաւատորմը ի՞նչ պիտի ըլլայ։ Վաղը երբ պատերազմ մը ծագի, Յունաստան ստիպուած է կռուիլ Թուրքիոյ հետ։

Իրաւունք չունի՞նք ըսելու թէ մեզի ի նպաստ եղած օժանդակութիւնը խորհրդանշական բան մըն է, եւ չնչին օգնութիւնով մը չենք կրնար Թուրք նաւատորմին պէտքերուն գոհացում տալ։ Քանիցս, եւ փաստացի պնդեցինք թէ Ամերիկայի կողմէ Թուրք նաւատորմին եղած օգնութիւնը տկար է, անբաւական է ։

Շատ քիչ նաւ տրուած է, յածանաւ բնաւ չէ տրուած, իսկ տրուած չորս թորփիլահալածներն ալ թիւով եւ ռազմական կարողութիւնով տկար կը մնան կարմիր նաւերուն առջեւ ։

Քանիցս պնդեցինք թէ օդածովային տորմիղի մը ստիպողաբար պէտք ունինք ։

Դաշնակիցները տարբեր սխալ մը գործեցին, իտալական մարտանաւեր Ռուսերուն ղրկելով, այս կերպով կրկնապատկեցին Սեւ Ծովու կարմիր նաւատորմին ուժը ։

Ասոր փոխարէն մեզի ըսուեցաւ թէ ամերիկեան օժանդակութեան ծրագրէն ազատարար — ընդծովեայ մը եւ երկու ընդծովեայ պիտի տրուին մեզի։ Տակաւին ոչ նաւ եկած է, ոչ ալ ընդծովեայ։ Եթէ գայ իսկ, Թրքական նաւատորմը շատ տկար է կարմիր նաւատորմին բաղդատմամբ։

Ռուսերը ունին երկու զրահաւոր, հինգ յածանաւ, 22 Թորփիլահալած, 10 Թորփիլանաւ, 32 ընդծովեայ ։

Իսկ մենք ունինք մէկ զրահաւոր, յածանաւ բնաւ չունինք, տասը Թորփիլահալած, Թորփիլանաւ չունինք, տասր սուզանաւ ունինք։ Թերեւս ռուսական ընդծովեաններու թիւը աւելի շատ է, եւ իրենց որակին եւ թիփին մասին գաղափար չունինք ։

Ամերիկեան իշխանութիւնը ո՞ր օրուան կը սպասէ, Թուրք նաւատորմը ուժեղացնելու համար։ Այդ պարագային օգուտի տեղ վնաս կ'ունենայ։ Կիսամիջոցներուն հետեւանքը մէջտեղն է,

ՄՈՌՑՈՒԱԾ ՀԵՐՈՍՆԵՐ

# ՀԱՃԻՆ (ԱՐԱՄԵԱՆ)

Հաճին՝ կամ այլ անունով Մղսի–աբարը, Բալուի Հաւաւ գիւղէն, բոլորովին մոռցուածներէն չէ, բայց իր մասին ալ շատ քիչ, աւելի ճիշդ՝ ոչինչ գրուած է։ Տասնեակ տարիներ առաջ՝ իր մահուանը առթիւ, Մարսէյլէն հայրենակից մը ՅԱՌԱՋի մէջ քանի մը տող նուիրած էր, եւ այսքան...։

Այս փոքրն ալ մանրամասն պատկերը չէ իր գործին ու կեանքին, այլ պարզ ուրուագիծ մը, համեստ պարտք մը կատարած ըլլալու համար։

Եթէ Մղսի աբոր համբաւը մեր շրջանին հերոսներէն՝ Գայլ – Վահանի (Մինաս Տօլպաշեան, Համագիւղացի) եւ Մեշետի Աւետիսի (Զարդան – ճագ) բարձրութեան չհասաւ, պատճառը այն է որ, առաջին երկու նուիրեալները ձգեցին գիւղ ու դաշտ, տուն ու ընտանիք միացան ֆետայիներու խումբերուն, «զարկին զարկուան»։ Գայլ – Վահանը ինկաւ Զօր ու Մօսունի անհաւասար կռուին մէջ, Մեշետին՝ զոհ գնաց 1915ի ընդհանուր բապանդին։ Իսկ Մղսի աբարը չգիտես ի՞նչպէս կամ ինչո՞ւ մնաց երկիրը՝ գիւղը ու հոն յանդուգն, անվեհեր խիզախութեամբ մը մաքառեցաւ Թուրքին եւ Քիւրտին դէմ։ Առջի դէպքին (1896) դեռ շատ երիտասարդ, բայց, արդէն աչքի փուշ՝ Թուրք եւ քիւրտ խուժանը կ'ուզէր առաջին նոխազը դարձնել զինքը։ Երիտասարդ Մղսին կը վերցնէ իր հրացանը ու կ'ապաստանի Հաւաւցիներու ծանօթ «մաղարան» (քարայր)։ Խոշոր քար մը կը գլորէ քարայրի ծակէն ներս՝ ու դիրք կը բռնէ անոր ետեւը։

Պաշարումը կը տեւէ օրեր։ Դուրսը ջարդը, թալանը կը վերջանան, բայց երիտասարդ Մղսին հաւատք չունի Թուրքին վրայ, դուրս չելլեր քարայրէն։ Քաղաքէն կուգայ գայմագամը, կուգան երեւելիներ, զօրք ու ժանտարմա Հայու ըմբոստ զաւակը «զսպելու համար»...։ Բոլոր սպառնալիքները կամ փաղաքշանքները զուր կ'անցնին, ի վերջոյ գայմագամը ինքը կուգայ քարայրին բերանը եւ կ'աղերսէ։ Երդում կ'ընէ — Թուրքին էն մեծ երդումը կ'ընէ —

— «Թող մայրս կինս ըլլայ, եթէ ձգեմ որ քու մազիդ դպչին...»։

Հաճին դուրս կուգայ։ Զինաթափ կ'ընեն, կը կապեն թեւերը ու շրջապատուած ժանտարմաներով եւ Քիւրտերով քաղաք կ'առաջնորդեն։ Ճանապարհին, ծանօթ կատղած Քիւրտ մը, առիթը կը գտնէ, յանկարծ կը յարձակի կալանաւորին վրայ ու ձեռքի կայծհան հրացանի բունովը ուժեղ հարուած մը կուտայ անոր ծոծրակին։

Հայորդին ետ կը դառնայ, կը նայի Քիւրտին կարմրած աչքերով՝ վագրի մը մոլեգնութեամբ, բայց աւա՜ղ, կապուած են իր բազուկները...։ Զայրոյթէն ակռաներ կը կճրտէ. «Թող առնելիք ըլլայ», կ'ըսէ։

Մեր կալանաւորը կը տանին քաղաք։ Դատավարութիւն տեղի կ'ունենայ եւ երկու տարուան բանտարկութեան կը դատապարտուի։ Մղսի աբարը երկու տարին լրացնելով ազատ կ'արձակուի։ Տուն դառնալու օրն իսկ կը գտնէ զինքը հարուածող ծանօթ Քիւրտը եւ տեղն ու տեղը կը սպաննէ։ Քիւրտին տէրերը քաղաք գանգատի կ'երթան։ Գայմագամը եւ իր շրջապատը նոր բարդութիւններ չստեղծելու համար, «խենդ» տղուն հետ գործ չունենալու համար, «Պիծակի բոյնին հետ մի խաղաք», կ'ըսէ ու տուն կը ղրկէ Քիւրտերը։

Յետոյ, Հաճին միշտ անվարան միայն իր փիլիսոփայութեան կը հետեւի։ «Մէկ հարուածողին պէտք է տասը հարուած տալ...»։ Այնուհետեւ ոչ Քիւրտը եւ ոչ ալ Թուրքը կը համարձակին Հային ծուռ նայիլ։

Կուգայ Օսմ. Սահմանադրութիւնը։ Թէեւ խարուսիկ, բայց, որոշ շունչ կը բերէ։ Հայը այլեւս կրնար բարձր խօսիլ, ձի նստիլ, զէնք ունենալ։ Երիտասարդութիւնը կ'երթար Պոլիս, Եւրոպա, Ամերիկա եւ նոր, հասուն գաղափարներով կը վերադառնար Երկիր։ Այն օրերուն, իրօք Հային շունչը Թուրքին շունչէն աւելի երկարեցաւ։ Հայը զարմանալի արագութեամբ վերելքի ճամբան բռնած էր, մինչ Թուրքը տեղ–քայլ կ'ընէր։ Քիւրտն ալ ետ կ'երթար։

Այդ շրջանին Մղսին գառնուկի պէս բարի, իր կալ ու կուտին հետն էր։

Երկար չտեւեց սակայն։ Կրկին եկան սեւ օրերը։ Պատերազմ։ Զինակոչ։ Զէնքերու հաւաքում եւ ինչքերու գրաւում։ Թուրք կառավարութիւնը «բացառիկ պարագայ»ներու պատրուակին տակ իր ոճրածին ծրագրին նախապատրաստական աշխատանքները կը կատարէր մեծ թափով։ Մղսի աբարը կը զգար ատիկա։ Կը զգային եւ ուրիշներ — սահմանափակ թիւով ուրիշներ...։

1915 Ապրիլ – Մայիս։ Սեւ մութ ամպերը լեռնակուտակ կախուած են Հայութեան հորիզոնին վրայ։ Չարագուշակ զրոյցներ. «Կ'ըսեն թէ ...»։

# ՑԱՆՔԱԾ ՀՈԳԻՆԵՐՈՎ

Ուսանողութիւնը ժողովուրդի մը ամէնէն աշխուժ, շարժուն, որոնումներ ու բարձր ձգտումներ ունեցող գաղափարապաշտ տարրն է։ Գոնէ այդպէս ալ պէտք է ըլլայ։ Որովհետեւ ան իր մէջ կը միացնէ երկու հիմնական տուեալ — երիտասարդական թարմ աւիւնը եւ մտաւոր լուսաւորութիւն։ Երկու գործօններ՝ որոնք իրար զարնուելով կուտան հոգիի կայծ ու բռնկում։

Շրջանէ շրջան եւ վայրէ վայր ուսանողութեան պատկերը կը փոխուի սակայն։ Ժամանակի եւ պայմաններու ազդեցութիւնը չափազանց խոր կ'ըլլայ անոր վրայ։ Օրինակ, ընդհանուր կարծիքը այն է թէ ներկայ ուսանողութիւնը նման չէ անհետացող սերունդին, նուազ է իր խանդավառութիւնը հոգեկան արժէքներու, գեղեցկութիւններու, գաղափարական թռիչքներու հանդէպ։ Այժմ երիտասարդները աւելի գործնական են եւ հետամուտ՝ դիրք ու դրամ ապահովելու կարելի եղածին չափ շուտ եւ կարելի եղածին չափ քիչ զոհողութիւններով։

Որքա՞ն արդար է այս դիտողութիւնը ընդհանուր առումով — վիճելի հարց մը։ Կասկած չկայ սակայն թէ բան մը կայ փոխուած ինչպէս ամէն մարզի մէջ, նոյնպէս եւ ուսանողութեան մտայնութեան։ Երկու համաշխարհային պատերազմները վերիվայր շրջեցին անցեալի ըմբռնումներն ու աւանդութիւնները։ Բարոյական շատ մը բերդեր քանդուեցան եւ բազմաթիւ հաւատքի սիւներ խախտեցան։ Բնականաբար այս փլուզումները անհետեւանք պիտի չմնային։ Այսօրուան անըստոյգ վիճակը, վաղուան վտանգներու սպառնալիքները, մնայուն սկզբունքներու չգոյութիւնը ուսանողութիւնը կը զրկեն ներշնչումի աղբիւրներէն եւ կը կապեն նիւթին, մանր ու անցողակի վայելքներու պաշտամունքին։

Այս բոլորի անդրադարձումը կը զգանք նաեւ հայկ. կեանքին մէջ։ Հայ ուսանողներէ փոքր թիւ մը միայն իր դասերուն հետ կը հետաքրքրուի նոյն ատեն ազգային եւ ընկերային խնդիրներով։

---

Հաւաւի համբաւաւոր Բարձրահայեաց Ս. Աստուածածնի վանքին մէջ տեղի կ'ունենայ մեծ ժողով։ Հոն է Հաւաւի ընտրանին։ Հաւաւը Բալահովիտի քանի մը տասնեակ հայ գիւղերու սիրտն է, անոր վճիռը վճիռ է։ Բոլոր աչքերը հոն դարձուած են։ Հոն են նաեւ շրջանի ներկայացուցիչներ, հոն է առաջնորդ Եղնիկ վարդապետը։

Պէտք է վճռել — Թուրք կառավարութեան անլուր, անտեղի, կասկածոտ կամակատարութեա՞ն ենթարկուիլ... թէ ինքնապաշտպանութեան դիմել։

Այդ պատմական ժողովին մէջ Հաճին կ'ըլլայ խիստ, կտրուկ ու վճռական։

— «Այս անգամուանը ուրիշ անգամներու չի նմանիր։ Այս անգամ եթէ առիթը գտնեն մեզ արմատէն կը հանեն եւ անդին կը շպրտեն։ Մեզի համար միակ ճամբան քանի ուշ չէ, կին ու երախայ փոխադրել Տերսիմ, երիտասարդութիւնը մնայ հոս եւ իր պարտքը կատարէ պատուի եւ հայրենի հողին հանդէպ, այսինքն կռուի...։ Գայմագամին եւ իր շրջապատին «մաքրութեան» գործը ես իմ վրաս կ'առնեմ։»

Հաճիին այս յստակ, վճռական մտքերուն ուժգնօրէն կ'ընդդիմանան «խոհեմ»ները։ Կ'ընդդիմանայ նաեւ Եղնիկ վարդապետը... — «Ի՞նչ կ'ըսէք, ի՞նչ կ'ընէք, կ'ըսէ հոգեւոր պետը «ծայրայեղ»ներուն, մասնաւորապէս խօսքը Հաճիին ուղղելով, ի՞նչ կ'ընէք։ Գիտէ՞ք թէ այդ ճամբան մեզ ո՛ւր կը տանի։ Եթէ ջարդ ալ պատահի, 24 կամ 48 ժամէն աւելի չի կրնար տեւել։ Իսկ եթէ փորձուինք զէնք բարձրացնել մէկ պայթիւնը բաւական է որ մեզ ամբողջ սուրէ անցընեն՝ եւ մեր տուները կրակի տան...»։ Բացարձակ մեծամասնութեամբ կ'իւրացուին այս մտքերը։ (Այս ժողովի մասին ինքը անձամբ իր ողջութեանը պատմած է այս տողերը գրողին)։

Հաճին ժողովէն դուրս կուգայ ընկճուած։ Դէպքերը Մղսիին համար այնքան հասունցած կ'երեւին որ, կ'աճապարէ իր ընելիքներու մասին։ Առտու մը լայն գօտիին մէջ կը տեղաւորէ երկայրի դաշոյն մը, ատրճանակ մը, բաճկոնին տակ, ուսերէն կախ երկու շարք փամփուշտ իր հետ կ'առնէ երկու զաւակները ու կը բռնէ Տերսիմի ճամբան։ Այդ օրերուն արդէն ճամբաներու վրայ քիւրտ աւազակներու վոհմակներ կը վխտային։ Հազիւ գիւղէն 10—15 մղոն հեռացած՝ «Նաճախ»ներով զինուած (տեսակ մը փոքրիկ կացին) հինգ Քիւրտեր կը ցցուին Հաճիին դիմացը։ «Է՛յ Ֆլա, մերկացիր...»։ Պատասխանի փոխարէն իր օրհնեալ ատրճանակը կ'որոտայ, Քիւրտերէն երեքը իրարու ետեւէ կ'իյնան, մնացած երկուքը ծունկի կուգան, քիչ առաջ արհամարհուած Ֆլայէն, կը պաղատին որ խնայէ իրենց։ Մեծահոգի Հայորդին կը խնայէ անոնց եւ ճամբայ կուտայ որ հեռանան։

(Մնացեալը յաջորդով)

ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ

Աւելի եւս փոքր է թիւը անոնց, որոնք բարձրագոյն իտէալի մը նուիրեալները կը հանդիսանան եւ սրբազան առաքելութեան մը կոչումը կը զգան իրենց մէջ։

Աւելի ցաւալին կայ սակայն։ Համալսարանաւարտ երիտասարդներ ունինք, որոնք եւրոպական մայրաքաղաքներէ ժամանած են՝ երկրաչափութեան, բժշկութեան կամ դեղագործութեան վկայական մը շալկած, եւ որոնք կը խորշին հայ կեանքէն ու արհամարհանքով կը նային այն ամէնուն վրայ, որ հայկական է։ Մինչդեռ այս տղաքը 8—10 տարի առաջ ազգին յոյսն էին, մինչեւ իսկ հայեցի բարձրագոյն ուսում էին ստացած՝ Եւրոպա մեկնելէ առաջ եւ շատեր ալ բարեսիրական հաստատութիւններու եւ ֆոնտերու կողմէ համալսարան ուղարկուած։

Նմոյշներ չեն պակսիր մեր շուրջ։ Կը մօտենաս իրենց սրտցաւօրէն, կ'ակնկալես որ տոհմիկ կարօտի եւ սիրոյ արտայայտութիւն մը պիտի լսես իրենց շրթներէն, կը յուսաս որ գործօն դեր պիտի ստանձնեն այս կամ այն միութեան մէջ, բայց անայլայլօրէն անոնք մէկ յանկերգ միայն ունին տեւաբար.

— «Եղբայր, այս ի՛նչ խեղճութիւն է հոս, ո՛ւր է Եւրոպան, ո՛ւր է Անդրնաիրը։ Մարդ կը զզուի մեր ազգային կեանքի պատկերը տեսնելով։ Միութիւն չկայ, հասկացողութիւն չկայ. վէճ, կռիւ, աղմուկ։ Աստուած չընէ որ խառնուիմ։ Ձեռքէս գայ՝ այսօր դարձեալ Եւրոպա կը մեկնիմ»։

Հաւանաբար մեր ընթերցողներէն շատեր լսած են այս բառերը, տարբեր դասաւորումով։ Բողները՝ մեր զարգացած, համալսարանական, բանիմաց երիտասարդներն են, որոնք նոր շունչ, նոր եռանդ ու ոգեւորութիւն պիտի մտցնէին հայաշատ այս գաղութներուն մէջ։ Մինչդեռ, վայրկեան առաջ փախչելու եւ իրենց հեշտասահ կեանքին վերադառնալու մասին կը մտածեն։

Անոնց ձեւակերպած բոլոր մեղադրանքները ինքնարդարացման համար են պարզապէս։ Ո՞ր ազգին մէջ վէճեր ու պայքարներ չկան։ Ո՞ր ժողովուրդը խեղճութիւններ չունի։ Ընդհակառակն, ան որ ճշմարտապէս կը սիրէ իր ազգը, պիտի սիրէ զայն իր ամբողջութեան մէջ՝ պակասութիւններով ու խեղճութիւններով, տկարութիւններուն եւ թշուառութիւններուն համար մանաւանդ, զանոնք դարմանելու բուռն նուիրումով։

Դժբախտաբար բացառութիւններու մօտ միայն կը գտնենք մենք այս նուիրումը։

Եւրոպան գիտութիւն տուած է մեր տղոց մտքին, բայց ցամքեցուցած է անոնց հոգիին ակերը։

Ուր են Գ. Օտեաններն ու Նահապետ Ռուսինեանները, որոնք Փարիզի լուսավառ պողոտաներուն վրայ Հայաստան կ'երազէին եւ իրենց մեծագոյն փառասիրութիւնն էր ազգին ծառայել, անոր խաւար խաւերը լուսաւորել։ Ո՞ւր են Արմէն Գարոները, որոնք իրենց համալսարանական ուսումը կէս ձգեցին՝ արիւնոտ յեղափոխութեան նուիրուելու համար։

Զափազանց տխուր բան է Եւրոպայէն վերադարձող հայ երիտասարդին բերնէն լսել թէ ինք համ չառներ այլ եւս հայերէն գրքերէն, հայ գրականութենէն, զանոնք աղքատ գտնելով, ինք կը սիրէ ֆրանսերէն կամ անգլերէն կարդալ, որովհետեւ մտքին սնունդը միայն օտար լեզուով կրնայ հայթայթել։

Հապա հոգի՞ին սնունդը, ի՞նչպէս կարելի է հայ անունով ապրիլ, բայց հայ ոգիին հաղորդակից չըլլալ։ Այդպէս չէին սակայն մեր Խաչատուր Աբովեաններուն ու Միքայէլ Նալպանտեանները, որոնք գերմանական կամ ռուսական համալսարաններու բարձրագոյն վկայականներուն տիրանալով հանդերձ, չմոռցան իրենց լեզուն։ Ոչ միայն չմոռցան՝ այլ նաեւ վերածնունդի ռահվիրաներ դարձան եւ գրականութեան դարբիններ։

Հայ ժողովուրդը անոնց անունները կը պահէ իր սրտին մէջ որպէս սրբութիւն, իսկ ժամանակը կը սրբէ ու կը տանի յիշատակը բոլոր անոնց, որոնք հոգեկան կապը կը կտրեն իրենց ազգին հետ, որքան ալ կարող ըլլան եւ բազմաշնորհ։

(ԽՄԲԱԳՐԱԿԱՆ «ԱԶԴԱԿ»Ի)

---

ԱՄՈՒՍԻՆԸ. — Իմացայ որ նկարուելու համար բոլորովին մերկացեր ես նկարիչին առջեւ, ճի՞շտ է։

ԿԻՆԸ. — Ճիշտ է. բայց կրակ վառած էր ներսը...։

×

Ա. — Ինծի գիրք մը փոխ կուտա՞ս։

Բ. — Ես սկզբունքով գիրք փոխ չեմ տար։ Կը տեսնե՞ս գրադարանս, բոլոր այս գիրքերը փոխ առնուած գիրքեր են...։

×

Ա. — Բայց չափէն աւելի կը խմես։

Բ. — Ի՞նչ ընեմ բարեկամ, վիշտերս խեղդելու համար է։

Ա. — Այսքան կը խմես եւ դեռ չխեղդուեցա՞ն վիշտերդ։

Բ. — Ո՛հ, իմ վիշտերս լողալ գիտեն...։




ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

HARATCH

Fondé en 1925
R. C. S. 376.286

Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13)
Վեցամս. 800 ֆր., Տար. 1600, արտ. 2500 ֆր.
Tél. GOB. 15-70 Գին 7 ֆր. C.C.P.Paris 1678-63
Samedi 5 AOUT 1950 Շաբաթ 5 ՕԳՈՍՏՈՍ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6221–Նոր շրջան թիւ 1632

Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ՁՋՈՒԵԼԻ ՎԱՅՆԱՍՈՒՆԸ

Հեռագիրը անցեալ օր հաղորդեց թէ Սթալին նոր տեսութիւն մը հրատարակած է « Բոլշեւիկ » ամսագրին մէջ, լեզուագիտութեան մասին: Դարձեալ ի պատասխան իրեն ուղղուած հարցումներու (28 յուլիս):

Ինչպէս յունիս 20ի յօդուածին մէջ, զոր հրատարակեց կուսակցական պաշտօնաթերթը, Փրավտա, Սպարապետը այս անգամ ալ քարեր կը գլորէ անոնց դէմ որ « վարդապետ » եւ « վարժապետ » կը հռչակէ (dogmatistes եւ pédants):

Կ'ըսէ թէ կուսակցութեան մէջ կան անդամներ որոնք գոց կը սորվին Մարքսի վարդապետութեան անջատ բանաձեւերը եւ մէջտեղ կը նետեն « աջ ու ձախ »: Տեղի եւ անտեղի: Այն ենթադրութեամբ թէ « վաւերական են բոլոր ժամանակներու համար, բոլոր երկիրներուն մէջ եւ կեանքի բոլոր պարագաներուն տակ »:

Այսպէս ալ մեր սովետահար, սովետագար դպիրներն ու ժամկոչները: Կարմիր գիծէն ներս թէ դուրս:

Այդ նոյն տարրերը չէ՞ն որ աւելի քան մէկ տարի խաչեցին վաստակաւոր ակադեմականը, Հրաչեայ Աճառեան, յանուն Մարքսի եւ Նիկոլա Մառի:

Անոնք չէի՞ն որ ռդիտօրէն անուանարկեցին Աճառեանը, ուսուցչապետ Գ. Ղափանցեանը եւ ուրիշներ, իբրեւ « ոչ – մարքսիստ, կոնտր–ռեւոլուցիոնէր, բուրժուա–ռէակցիոնէր »:

Եւ դեռ պիտի չարունակէին « սեւացրէք »ը, անխուսափելի հետեւանքներով, երբ Սթալին ինք պարտք սեպեց յայտարարել հրապարակաւ.

— « Ն. Մառը լեզուագիտութեան մէջ մտցրեց սխալ, ոչ–մարքսիստական փորմուլա լեզուի, որպէս վերնաշէնքի մասին, եւ շփոթութեան մէջ գցեց իրեն, խճողեց լեզուագիտութիւնը »:

Դեռ աւելի կծու դաս մը.

— « Ն. Մառը լեզուագիտութեան մէջ մտցրեց մարքսիզմին ոչ յատուկ անհամեստ, պարծենկոտ, մեծամիտ տոն (շեշտ), որը յանգում է անհիմն ու թեթեւամիտ ժխտմանը ամէնի, ինչ որ եղել է լեզուագիտութեան մէջ, Ն. Մառից առաջ »:

Երկու վկայութիւններն ալ կ'արտատպենք Երեւանի « Սովետական Գրականութիւն եւ Արուեստ » ամսագրի 1950 յունիսի թիւէն, ուր հրատարակուած է Սթալինի յօդուածին թարգմանութիւնը, հետեւեալ խորագրով. — « Մարքսիզմի վերաբերյալ լեզվագիտության մեջ »:

Ինչպէս կը տեսնէք, խորագիրն անգամ թութակաբանութիւն է, — տառական թարգմանութիւն ռուսերէնէ: Բառը բառին եւ տողը տողին:

Նոյն տառամոլ եւ ձախաւեր մարզանքները՝ ընկերային եւ քաղաքական կեանքի մէջ:

Անշուշտ երկաթեայ թաթ մըն է որ կը ճնշէ այնտեղ: Կը վարէ պրկելով, թեւատելով, տրորելով: Միեւնոյն կաղապարին մէջ թափելով:

Իսկ այստե՞ղ: Եւ բոլոր այն երկիրներուն մէջ, ուր կարելի է մտածել, գրել, գործել ամենայն ազատութեամբ ...

Մարդիկ բառերը, նշանախօսքերն անգամ այնտեղէն փոխ կ'առնեն, օրակարգը գրական – գեղարուեստական ըլլայ թէ քաղաքական – կուսակցական:

Այս անոպայ, մոլեռանդ ստրկամտութիւնն է որ խժալուր աղմուկ մը կը յարուցանէ պարբերաբար, այս կամ այն գաղութին մէջ, ժանգոտած սլաքներ արձակելու համար Դաշնակցութեան դէմ:

Կը տեսնէք արդէն, — մարդիկ խաղաղութեան դատն անգամ վերածեր են խեղկատակութեան: Դարձուցեր են մարտակոչ:

Եղկելիները փոխանակ լրջօրէն վերլուծելու կացութեան ելեւէջները, փոխանակ պարկեշտօրէն լուսաբանելու հանրային կարծիքը, անձնատուր եղած են անարգ խուժանավարութեան մը: Կ'ուզեն այն տպաւորութիւնը ձգել թէ Հայերն ալ ունին « պատերազմի հրձիգներ, ամերիկեան աշխարհակալութեան գործիքներ »:

Իրենց բոլոր ելոյթներուն մէջ, ամէնէն զզուելին պիտի մնայ այդ վայնասունը, որ կը ձգտի ազդել ոչ միայն տարագիր բազմութեանց, այլ եւ օտարներուն վրայ:

Իրենք ալ գիտեն որ կը ստեն:

Եւ սակայն, ուրիշ դրամագլուխ չունին: Ի՞նչպէս պիտի ապացուցանեն իրենց « գործունէութիւնը »:

Շ.

## Դէմ դիմաց ռազմափորձ

ՍԵՒ ԾՈՎՈՒ ՄԷՋ

Պոլսէն կը հեռագրեն տեղական թերթի մը.—

Բրիտանական եւ ամերիկեան տորմիղները յաջորդաբար կ'այցելեն Միջերկրականի գլխաւոր նաւահանգիստները: Թրքական տորմիղը ռազմափորձեր կը կատարէ Եգէական ծովուն մէջ: Օգոստոսին պիտի վերսկսի զանոնք Մարմարայի մէջ, յետոյ պիտի անցնի Վոսփորը, ռազմափորձեր կատարելու համար Սեւ ծովու մէջ:

Գրեթէ նոյն թուականին ռուսական ամբողջ տորմիղը շատ կարեւոր ռազմափորձեր պիտի կատարէ Սեւ ծովու մէջ, ցամաքային եւ օդանաւային ուժերով, ինչպէս եւ պուլկարական եւ ռումանական բանակներով: Այժմէն իսկ զինուորական շարժումներ կը նշմարուին Պալքաններու մէջ ուր ճամբորդներու կառախումբերը ստիպուած են կանգ առնել օրերով, ճամբայ բանալու համար զինուորներու փոխադրութեանց: Անշուշտ ռազմափորձերու եղանակին մէջ ենք: Եւ սակայն կարելի չէ ժխտել թէ այս տարի շատ են ռազմափորձերը եւ կը կատարուին այնպիսի շրջաններու մէջ որոնք Պալքաններու եւ արեւելեան Եւրոպայի ամէնէն փափուկ կէտերն են:

Միջազգային հանդարտութեան ատեն, բոլորովին բնականոն պիտի համարուէր այս ամբողջ զինուորական իրարանցումը: Բայց այժմ խաղաղութեան շրջան մը չէ որ կը բոլորենք եւ ատով իսկ այս չափազանց բազմաթիւ ռազմափորձերը քիչ մը վրդովիչ հանգամանք կը ստանան: Ո՛րքան ախտանշաններ — խլրտումներ Եուկոսլաւիոյ եւ Յունաստանի սահմաններուն վրայ, հետզհետէ յաճախադէպ սահմանային միջադէպեր, Պուլկարիոյ եւ Ռումանիոյ կողմէ ամբաստանութիւններ Եուկոսլաւիոյ եւ Յունաստանի դէմ, արտակարգ միջոցներ Հունգարիոյ եւ Ռումանիոյ սահմանամերձ շրջաններուն մէջ: Յունական խնդիրը չէ փակուած եւ Եուկոսլաւիոյ կողմէ Կոմինֆորմի մէջ բացուած վէրքը, կը կոտտայ աւելի քան երբեք:

Եւ յետոյ, խորհրդային տորմիղը մինչեւ այսօր երբեք այնքան ընդարձակ ռազմափորձեր կատարած չէր Վոսփորի հարեւան շրջանին մէջ, այնքան բազմաթիւ զօրքով: Անշուշտ Խ. Միութիւնը կ'ուզէ ապացուցանել թէ չէ մոռցած Նեղուցներու խնդիրը եւ թէ ի վիճակի է արգիլելու որ եւէ նաւատորմի մուտքը Սեւ ծովու մէջ:

Անգարան միեւնոյն ատեն կատարելով իր ռազմափորձերը, պատասխանե՞լ կ'ուզէ Մոսկուայի: Պոլսոյ մէջ կը կարծեն թէ Մ. Նահանգներուն խորհուրդով է որ Թրքական սպայակոյտը որոշած է այս ռազմափորձերը: Ամէն պարագայի մէջ, Թրքական եւ խորհրդային տորմիղներուն ներկայութիւնը միեւնոյն թուականին եւ միեւնոյն վայրին մէջ չի կրնար յարաբերութեանց մեղմացումի նշան համարուիլ: Եւ կարծես ապացուցանելու համար թէ Մ. Նահանգները Թուրքիոյ հետ են միշտ, նոյն շրջանին բաղդատաբար հզօր ամերիկեան տորմիղ մըն ալ խարիսխ պիտի նետէ Պոլսոյ ջուրերուն մէջ:

Խորհրդային տորմիղին ռազմափորձերուն հետ միաժամանակ տեղի պիտի ունենան ռումանական եւ պուլկարական բանակներուն ռազմափորձերը՝ խորհրդային հրամանատարութեամբ. ինչ որ անգամ մը եւս կ'ապացուցանէ թէ ռուսական սպայակոյտը այժմէն իսկ ամբողջովին իր ձեռքն առած է այդ երկու բանակները, ինչպէս մառեշալ Ռոսոքովսկիի գերագոյն հրամանատարութիւնը լեհական, եւ հաւանաբար հունգարական եւ չոխսլովաքեան բանակներուն:

Հակառակ այս վրդովիչ երեւոյթներուն, Սթամպուլի եւ Անգարայի — Մօտաւոր Արեւելքի այս երկու պատշգամներուն — քաղաքական շրջանակները չեն հաւատար պատերազմի վտանգի մը մօտաւորութեան: Ընդհանրապէս կը կարծուի թէ Մոսկուա կ'ուզէ օգտուիլ Քորէայի պատերազմին ազդեցութենէն, սաստկացնելու համար ջլամարտը, սպառնալու Թիթոյի, հասկցնելու թէ չէ վերջացած Յունաստանի քաղաքացիական պատերազմը եւ թէ Սեւ ծովը ռուսական լիճ մըն է, հակառակ Դաշնակիցներու ընդդիմութեանց:

Եթէ Մոսկուան հոգեբանական ազդեցութիւն մը գործել կ'ուզէր, մասամբ յաջողած է: Արդարեւ, այն հանդարտութիւնը որ կը տիրէր վերջին շաբաթներու ընթացքին, Թուրքիոյ եւ հարեւան երկիրներու մէջ, տեղի տուած է տեսակ մը ջղագրգռութեան, ինչպէս եւ ամերիկեան շրջանակներու մտահոգութեան:

## Ապահովութեան Խորհուրդը

ՄԵՐԺԵՑ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՕՐԱԿԱՐԳԸ

ՆՈՐԷՆ ԾԱՆՐ ԲԱՌԵՐ ՓՈԽԱՆԱԿՈՒԵՑԱՆ

Ապահովութեան Խորհուրդը Եչ. օր (Գ. նիստ) բուռն վիճաբանութիւններէ վերջ մերժեց Խ. Միութեան պատուիրակին՝ նախագահ Մալիքի բանաձեւը, որ կ'առաջարկէր նախ քննել կարմիր Չինաստանի ընդունելութեան խնդիրը, յետոյ Քորէայի հարցը: Մէկի դէմ (Խ. Միութիւն) ութ ձայնով քուէարկուեցաւ Մ. Նահանգներուն բանաձեւը, որ կը հաստատէր թէ հիւս. Քորէան յարձակում կատարած է: Եուկոսլաւիա եւ Հնդկաստան ձեռնպահ մնացին:

Քուէարկութենէն առաջ, Պ. Մալիք յայտարարեց թէ Խորհուրդը պարտաւոր է ընդունիլ երկու եղանակներէն մէկը, — կա՛մ Խ. Միութեան, այսինքն խաղաղութեան ճամբան եւ կամ « նախայարձակման ճամբան որուն գլուխը կը գտնուին Մ. Նահանգները »: Իր տեսակէտով, նախայարձակում չէ կատարուած Քորէայի մէկ մասէն միւսին վրայ, այլ պարզապէս քաղաքացիական կռիւ մըն է որ կը մղուի: « Զգենք որ Քորէացիները իրենք ընտանեբար կարգադրեն իրենց կռիւները, եւ ոչ թէ յարձակում կատարենք ծովէն, ցամաքէն եւ օդէն, ինչպէս կ'ընեն Մ. Նահանգները »: Խորհրդային պատուիրակը միեւնոյն ատեն ամբաստանեց Մ. Նահանգները թէ շարք մը « գայթակղելի » տնօրինութիւններ պարտադրած են Ազգաժողովին, ընդարձակելով թշնամութիւնները եւ ուրիշ պետութիւններ ալ խառնելով Քորէայի կռիւներուն: « Ամերիկեան ծրագիրը ուրիշ նպատակ չունի եթէ ոչ երկարաձգել կռիւը, զայն սահմանափակելու պատրուակով »:

Ամերիկեան պատուիրակը, Պ. Օսթին, այս մեղադրանքներուն պատասխանեց ուժգնօրէն:

— « Այսօր, մինչ այս կազմակերպութեան անդամներուն զաւակները կը մեռնին Քորէայի ռազմադաշտին վրայ, ՄԱԿի դրօշին տակ, եւ մինչ մենք բանաձեւ մը առաջարկած ենք վերջ տալու համար աւերին, ահա նախագահ մը որ այս ժողովարանը կ'օգտագործէ ճառ խօսելու համար, առանց կապ ունենալու ոչ նիւթին, ոչ ալ օրակարգին հետ: Մենք յոգնած ենք այլ եւս — եւ կարծեմ ամբողջ աշխարհը յոգնած է — իրականութեան այս բացայայտ եւ ամօթալի խեղաթիւրումներէն: Միշտ նոր սպառնալիք մը, նոր գրգռութիւն մը, նր զրպարտութիւն մը: Այլեւս ժամանակը անցած է այս կարգի ելոյթներու համար: Մեր քննած հարցերը այնքան եղերական են եւ իրական, որ չեն կրնար ծառայել քարոզչական խեղաթիւրումներու: Իմ կառավարութիւնս ոչ պէտք ունի, ոչ ալ կամք՝ նոր բառերով լեցնելու այն ահագին անդունդը որ կը գտնուի խորհրդային պատուիրակին յայտարարութեան եւ բուն իրականութեան միջեւ »:

Պ. Մալիք պատասխանելով « ջղագարութիւն » եւ « չանթաժ » վերագրեց ամերիկեան պատուիրակին: Այս անգամ Ֆրանսական պատուիրակը, Պ. Շովէլ խօսք առնելով, պաշտպանեց Ազգաժողովին դիրքը Քորէայի հարցին մէջ, եւ բողոքեց « այն բոլոր փորձերուն դէմ որ կը ձգտին խանգարել Ապահովութեան Խորհուրդին համերաշխութիւնը »:

## ՔՈՐԷԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Վերջին լուրերու համաձայն, Ամերիկացիները 25 քիլոմեթր նահանջած են ընդհանուր ճակատին վրայ: Հիւս Քորէացիները կը շարունակեն ահագին ուժեր թափել Չինկու – Ֆուզան առանցքին վրայ, կտրելու համար Ամերիկացիներու հաղորդակցութեանց գիծերը եւ գրաւելու Մազանի, Չինհայի եւ Ֆուզանի նաւահանգիստները: Իրենց յառաջապահները հազիւ 15 քիլոմեթր հեռու են Մազանէն, որ ամէնէն կարեւոր դիրքն է, Ֆուզանի ճամբուն վրայ:

Կեդրոնական ճակատին վրայ, Դաշնակից ուժերը քաշուեցան Քումշոն – Թակու գիծէն, եւ այժմ ամուր կառչած են նոր դիրքերու, Հաքթանկ գետին արեւելեան կողմը: Արեւելեան ճակատին վրայ, հարաւ. Քորէացիները ետ առին Եոնկտոքը, աջակցութեամբ դաշնակից մարտանաւերու:

Մասնագէտներ կ'ըսեն թէ Հաքթանկը վերջին բնական ամրութիւնն է դէպի ամերիկեան գլխաւոր խարիսխը, Ֆուզան: Հիւս. Քորէացիներու անթելը կը յայտարարէ թէ վերջնական յաղթանակը ութ – տասը օրուան խնդիր է: Իսկ ամերիկեան շրջանակներու մէջ կը հաւաստեն թէ Դաշնակիցները հետզհետէ կը շահին ճակատամարտը, տարածութիւն կորսնցնելով հանդերձ:

× Աւստրալիա որոշեց 2000 զինուոր ղրկել: Կը հերքուի այն լուրը թէ Ֆրանսա ալ զինուոր պիտի ղրկէ:

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

## Համայնավարները ի՞նչպէս կը գործեն Ամերիկայի մէջ

—

Վերջերս Դաշնակցային Հետախուզութեան Գրասենեակի պետը՝ Էտկար Հուվըր, քանի մը թերթակցականներու՝ իրեն ուղղած հարցումներուն ի պատասխան տուած է այս երկրին մէջ գործող համայնավարներու գործունէութեան մասին քանի մը տեղեկութիւններ, որոնք չափազանց հետաքրքրական են:

Հուվըր ըսած է որ ամենավերջին ստոյգ թիւերու համաձայն համայնավարներու թիւը Մ. Նահանգներու մէջ 54,174 է: Ոմանք, ըսած է ան, իրենք զիրենք կ'օրօրեն այն պատրանքով թէ, թուական տեսակէտէ անոնք փոքր ըլլալով, առանձին վտանգ մը չեն ներկայացներ: Սխալ է սակայն այսպէս մտածել. անոնք շատ աւելի են քան իրենց անդամներու թիւը. անոնք ունին իրենց հետեւորդները եւս: Միջին հաշուով մէկ համայնավար իրեն հետ ունի 10 ուղեկից: Այս հաշուով աւելի քան կէս միլիոնի հասնող ստորերկրեայ թշնամի բանակ մը գոյութիւն ունի այս երկրին մէջ, ինչ որ երբեք արհամարհելի ուժ մը չէ:

Եւ այս երկրին մէջ անոնք ամէնէն աւելի շատ են բնակչութեամբ խիտ նահանգներու մէջ: Օրինակ, Մ. Նահանգներու համայնավարներու գրեթէ կէսը՝ 25,000 հոգի, կը գտնուի Նիւ Եորքի նահանգին մէջ: Ապա կուգան Քալիֆորնիա՝ որ ունի 6977 անդամներ, Իլինոյզ՝ 3361, Փենսիլվանիա՝ 2876, Օհայօ՝ 2834 եւայլն:

Ամերիկայի համայնավարներու մէկ կարեւոր մասը դրսէն ներմուծուած ուժեր են. անոնցմէ շատերը յանցանքի վրայ բռնուած, դատուած ու յանցաւոր գտնուած են: Անոնք պէտք է դուրս հանուին այս երկրէն, որովհետեւ անոնց նպատակն է բռնի տապալել այս երկրի կարգերը: Բայց ռուս կառավարութիւնը կը մերժէ անոնց վիզա տալ: Այս կերպով անոնք չեն կրնար ետ ղրկուիլ. կը մնան այստեղ եւ կը դառնան վտանգ երկրի ապահովութեան համար: Մեր երկրի օրէնքներուն համաձայն անոնցմէ շատերը չեն արգելափակուիր, այլ՝ դրամական երաշխաւորութեամբ ազատ կ'արձակուին: Հուվըր կը գտնէ որ ասիկա շիտակ չէ. այսպիսի օրէնքներ մեր ապահովութեան դէմ սպառնալիք են:

Դաշնակցային գաղտնի ոստիկանութեան պետի յայտարարութեան համաձայն, անցեալ տարի 11 յայտնի համայնավարներու Նիւ Եորքի դատավարութենէն ետք, համայնավարներ դադրած են անդամատետրեր տալ իրենց անդամներուն. անոնք ջնջած կամ գաղտնի պահած են նաեւ իրենց անդամներու անուանացանկերը. անոնք այժմ ըստեղծած են իրարու հետ յարաբերութեան նոր ձեւեր: Անոնք իրենց հրապարակային հաւաքոյթները եւս հասցուցած են նուազագոյնի: Անոնք ամէն ճիգ կը թափեն որ իրենց մէջ չթափանցեն գաղտնի ոստիկանութեան գործակալները:

Էտկար Հուվըրի յայտարարութեանց համաձայն, աշխարհի վրայ չկայ կազմակերպութիւն մը որ ստեղծած ըլլայ փրոփականտի այնպիսի կատարեալ մեքենայ մը, ինչպէս ստեղծած են համայնավարները աշխարհի ամէն կողմը: Անոնց գլխաւոր զէնքը խօսքը եւ գրիչն են. անոնք գիտեն մարդոց վրայ ճնշում բանեցնելու, մարդիկը իրենց ցանցին մէջ առնելու բոլոր միջոցները: Այս նպատակին հասնելու համար անոնք շատ լաւ դաստիարակած են ինքզինքնին:

Հուվըր կ'ըսէ որ Ամերիկայի մէջ համայնավարներու մէկ կարեւոր մասը յաջողած է թափանցել մեր երկրի հիմնական ճարտարարուեստներուն մէջ. — պողպատի, ծանր մեքենաներու արտադրութեան, հաղորդակցութեանց, փոխադրական միջոցներու, ելեկտրական եւ ծովային ճարտարարուեստներու մէջ եւայլն: Երկրի տագնապալի մէկ րոպէին, անոնք կրնան մեզի հասցնել շատ ծանր վնասներ: Իրենց նպատակներու համար անոնք յաջողապէս կ'օգտագործեն երիտասարդութիւնը, վեթերանները, օտար ազգութեանց պատկանողները, սեւամորթները եւն.: Անոնք չեն նեղուիր նիւթական միջոցներէ եւս: Կանոնաւոր կերպով անոնք դրամ կը ստանան իրենց անդամներէն, ուղեկիցներէ, հարուստ դասին պատկանող անհատներէ: Զանազան ձեւերով նիւթապէս անոնց կ'օգնէ նաեւ Մոսկուան:

Հուվըր իր խօսակից թերթակցականներուն յայտնած է նաեւ, որ այս երկրի ամէն կողմը համայնավարներ ստեղծած են լրտեսական ահաւոր ցանց մը: Անոնք կ'աշխատին տեղեկանալ մեր հիւլէական հիմնարկութեանց ամբողջ գործունէութեան, մեր գիտնականներու զանազան մարզերու մէջ կատարած գործերուն, մեր պատերազմական գաղտնիքներուն, մեր հարստութեանց աղբիւրներուն: Ժողովրդապետական Ամերիկան եւ անոր շուրջ խմբուած արեւմտեան պետութիւնները համարելով համայնավարութեան դէմ պայքարող վերջին ամրոցը, անոնք կ'աշխատին զայն ներսէն գրաւել՝ ապագայ պատերազմի մը պարագային զայն կատարեալ անգործութեան դատապարտելու համար:

Համայնավարութիւնը այս երկրի պտուղը չէ, կ'ըսէ Էտկար Հուվըր. ան միջազգային դաւադիր ուժ մըն է, որ չարունակ իր գործունէութեան ներշնչումը կը ստանայ Մոսկուայէն: Ան մեր կարծածէն շատ աւելի լուրջ վտանգ մըն է. ան այժմ սկսած է ապակեդրոնացնել իր գործունէութիւնը՝ աւելի դիւրութեամբ խուսափելու համար դիտող աչքերէ: Անոր համար գործունէութեան ամէն միջոց ներելի է, միայն թէ հասնի իր բո՛ւն նպատակին: Իրաւունք ունի Էտկար Հուվըր, երբ կ'ըսէ որ մեր անկումը պիտի պատրաստենք, եթէ միահամուռ ուժերով չպայքարինք միջազգային այս լուրջ վտանգին դէմ:

(Խմբագրական « ՀԱՅՐԵՆԻՔ »ի)

## "Մեծ՝ կօշիկով տղան"

—

Խարբերդի առաջնորդարանէն մինչեւ եկեղեցի, մեր ամէն օրուան ճամբուն վրայ, պզտիկ ու աւերակ տուն մը կար:

Գիւտ եպիսկոպոսին կարգադրութեան համաձայն, խումբ մը որբեր, գլխաւորութեամբ երգեցողութեան ուսուցիչ կոյր Պ. Սարգիսին, ամէն իրիկուն ժամերգութենէն քիչ մը առաջ ճամբայ կ'ելլէինք, եկեղեցի երթալու համար:

Ամէն օր Վարի Փայտի հրապարակին աղբիւրը անցնելէ վերջ, կանգ կ'առնէինք այդ փլած եւ աւերակ տան առջեւ, որ պզտիկ հրապարակ մըն ալ ունէր, քիչ մը աչքէ հեռու, իբրեւ խաղավայր:

Մեր խաղերը թէեւ չափուած – ձեւուած կանոն մը չունէին, բայց եւ այնպէս մեծ հաճոյք կը զգայինք: Մանաւանդ դժբախտ Սարգիսն ալ ընդնազդաբար մեր շարժումներուն հետեւելով, մէկուն եւ միւսին անունը տալով, կը քաջալերէր, դէմքը միշտ արեւին դէմ տուած:

Օր մըն ալ նորէն մեր խաղի պահուն, տեսանք որ այդ աւերակ տունը պզտիկ մուտքի դուռ մը ունէր եւ դուռ մըն ալ տանիք բարձրանալու: Մինչեւ այդ օր այդ ամայի տան կտուրէն վրայ առաջին անգամ ըլլալով երկու ցնծուհիներու երեւումը մեր ուշադրութիւնը գրաւեց: Անոնք մեզ դիտելով իրարու հետ կը փսփսային:

Այդ օրէն սկսեալ ամէն օր, երբ տունին առջեւէն կ'անցնէինք, երկու ցնծուհիները վազելով կտուր կուգային, օրէ օր աւելի հետաքրքիր եւ անհամբեր:

Օր մըն ալ խնդրեցին մեզմէ որ կանգ առնենք, « ըսելիք ունինք », ըսելով:

Բայց մենք ամէն անգամ ալ առանց ուշադրութիւն ընելու արագ արագ, մանուկներու յատուկ ինքնահաւանութեամբ, մեր ճամբան շարունակելով կ'անցնէինք:

Օր մը սակայն լսեցինք մէկուն կրկնակի աղաչանքները, — Աստուծոյ սիրոյն, եղբայրներս... Պ. Սարգիսը ինքզինքը անակնկալի մը առջեւ ըզգալով, դարձաւ մեզի եւ խորապէս յուզուած, — « Կեցէ՛ք տղաք », ըսաւ:

Երբ կանգ առինք, Պ. Սարգիս դէմքը անոնց դարձնելով հարցուց. —— Ի՞նչ կ'ուզէք:

Այդ պահուն աղջիկներէն մէկը, երեսին քօղը կիսով մը բանալով եւ ցոյց տալով իր տժգոյն դէմքն ու լացէն ուռած [redacted] մաշուղը մեզմէ մէկը ցուցնելով հարցուց.

— Այդ մեծ կօշիկով տղուն անունը ի՞նչ է:

Երբ մենք մեծ կօշիկով տղուն անունը տուինք, ան իր դէմքը գոցելով եւ գլուխը շարժելով հեկեկաց:

Մենք իրարու, աւելի շատ « մեծ կօշիկով տղուն » նայելով, կը սպասէինք լուռ ու տխուր:

Աղջիկը այս անգամ շատ ցած ու մարած ձայնով մը եւ կէս հարցական շեշտով մը ուզեց հասկնալ թէ Տրապիզոնցի՞ է:

Մեր հաստատական պատասխանին վրայ, ան փլաւ հովէն շրջուած ծառի մը նման:

Այդ երեկոյ մեր խումբը եկեղեցւոյ պաղ խորանին առջեւ, ամէն օրուան իր գոց ըրած աղօթքներուն բառերը հազիւ կրնար ծամծմել:

Սե՛ւ օրերու բազմահազար ճղակոտոր ծառերէն երկու ծիլեր, քոյր եւ եղբայր բարի ու չար ճամբու մը մէջ իրար կը խաչաձեւէին:

...-Յաջորդ օրը այդ աւերակ տան առջեւ չարախինդ բազմութիւն մը իրարու կ'աւետէր « անհաւատ »ի մը աղջկան անձնասպանութիւնը:

ԱՐԱՑ ՏԷՐ ՎԱՐԴԱՆԵԱՆ

КԻՆԸ (օդանաւով ճամբորդած ատեն). — Ի՛նչ կ'ըլլայ, ի՛նչ չըլլար. բժիշկ մը տանինք միասին:

ԱՄՈՒՍԻՆԸ. — Աւելի լաւ չէ՞ որ քահանայ մը տանինք...:

### ԹՈՒՐՔ ՈՒՍՈՒՑԻՉ ՄԸՆ Է ՈՐ ԿԸ ՊԱՏՄԷ

## Մեր գիւղը.— Թ.

—

Արեւն – քրտինք մտայ, պաշտօնավարած գիւղիս եւ ծննդավայրիս մահացութիւնները եւ ծնունդներու ցուցակագրութիւնը պատրաստելու համար:

Չորս տարի տքնեցայ, այս վիճակագրութիւնները լրացնելու համար: Մեր ձեռքը ունինք ցուցակներ, ուր ընտանիքի պետերուն անունները արձանագրուած են: Անոնց շուրջ չեմ ուզեր մանրամասնութիւններ տալ, ուղղակի կը գոհանամ արդիւնքներով:

Տ... գիւղը ունի 350 տուն, չորս տարուան մէջ 226 ծնունդ ունեցած է, երախաներէն 18ը մեռած են, 145ը կ'ապրին, բայց աւելի առաջ ծնածներէն 53 հոգի մեռած են, որով 226 ծնունդի փոխարէն 134 մահ:

Նորածիններէն շատեր նոյն տարին մեռած են, ոմանք երկունքի ժամանակ, ուրիշներ ալ խնամքի, հոգածութեան պակասէն:

Ահա նաեւ Ն... գիւղը, 135 տուն, 708 տընւոր: Չորս տարուան ընթացքին 163 երախայ ծընած է, 67ը մեռած, 96ը ողջ. դարձեալ նոյն ժամանակաշրջանին մէջ, մեծերէն 40 հոգի մեռած են, որով 163 ծնունդի դէմ 107 մահ: Չորս տարուան մէջ, գիւղին բնակչութեան վրայ 54 հոգի աւելցած է:

Տ... գիւղին մէջ չորս տարուան ընթացքին մահերու համեմատութիւնն է հարիւրին 36, Ն... գիւղին մէջ հարիւրին 41:

Ինչպէս կը տեսնէք, մահացութիւնները շատ բարձր են: Թուրք գիւղը բազմածին է, եթէ տարափոխիկ հիւանդութիւններ չըլլան, (շատ կան մեր գիւղերուն մէջ), ծնունդները դարձեալ կ'աւելնան, ի հեճուկս կեանքի ամէնէն անձուկ պայմաններուն:

Այս յաւելումը կրնայ աւելի արագ ըլլալ, եւ ասոր համար անհրաժեշտ է առաջքը առնել տղոց մահերուն:

Գիւղին մէջ, գրեթէ ոչ ոք գիտէ թէ ինչպէս կը խնամեն, կը հոգան երախան: Մանկատածութեան մասին նախնական ծանօթութիւն մը անգամ չունին: Եթէ ունենան իսկ, կեանքի պայմանները այնքան դժնդակ են որ չեն կրնար կիրարկել իրենց գիտցածները:

Ծննդաբերութեան առաջին օրերուն իսկ, երախան կրնայ մանրէներով վարակուիլ եւ մեռնիլ, իսկ եթէ չմեռնի, անսուաղութեան հետեւանքով [redacted]

Ձմեռը ցուրտին հետեւանքով եւ կամ ծուխին կամ մաքուր օդի պակասէն ալ կը մեռնի:

Ամառը կուգայ. եւ մայրը ժամանակ չունենար իր զաւակով զբաղելու:

Ան ալ ամէն գիւղացիի պէս պարտաւոր է արտ վազել ամէն օր, մասնակցիլ կալի, քաղի, ցանքի աշխատանքներուն, առտուընէ մինչեւ իրիկուն տատիլ ու բանիլ:

Մայրը այս պայմաններուն տակ կը շալկէ երախան եւ արտ կը տանի, հոն անկիւն մը կը ձգէ, մինչեւ իրիկուն արեւն–քրտինք կը մտնէ, մանկիկն ալ դաշտին մէկ անկիւնը կը թզկայ անդադար: Կինը սանկ ոտքի վրայ կաթ կուտայ անգամ մը, եթէ կաթ մնացած է ծիծերուն մէջ: Շատ մը մայրեր սնունդի պակասէն կաթ չեն ունենար: Ի՛նչ կ'ուտեն որ կաթ բերեն. սոխ–հաց, վարունգով հաց:

Ամրան տաքերուն, տղոց փորհարութիւնը կը սկսի, եւ մանուկներուն տասնէն ինը կը մեռնին այս հիւանդութենէն: Երախայ մը եթէ փորհարութենէ բռնուի, կը հասկնան թէ մեռնելու դատապարտուած է:

Կը նշանակէ թէ մահերուն մեծագոյն պատճառը անսուաղութիւնն է, թշուառութիւնն է: Տղեկը փաթթելու, խանձարուրելու համար երկու մեթր կտաւ անգամ չեն կրնար գտնել, մայրական կաթը փոխարինելու համար ո՛ւր պիտի գտնեն անարատ կաթ, կամ տղոց յատուկ սննդաւոր ուտելիքներ: Ինչպէ՞ս հոգան, պահպանեն մանուկը:

ՄԱՀՄՈՒՏ ՄԱԳԱԼ

ՓԱՐԻԶԻ ՀՐԵԱՆԵՐԷՆ (Ռոչիլտ եւն.) յափշտակուած գոյքերու դատին առթիւ, տասնական տարի թիապարտութեան դատապարտուեցան երկու փախստական նացիներ, Շոլց եւ Վոլթըր Հոֆըր, իսկ մէկ տարի բանտարկութեան՝ Կէօրկ Էպէրթ, որ ներկայ էր: Ամբաստանագիրը կ'ըսէ թէ Ռոզէնպէրկի եւ Կէօրինկի հրամանով Գերմանիա փոխադրուած էին 11,000 նկարներ, 583 արձաններ, 580 օթոցներ, 2477 թանկագին կարասիներ, 5185 յախճապակիներ, 550,000 հատոր գիրք, 4174 սնտուկ ուրիշ արժէքաւոր իրեր: Դատավարութեան ատեն իբրեւ վկայ լսուեցաւ բանտարկեալ դեսպանը, Աբեց:

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ԳՐԵԼ ՄԷԿ ԷՋԻ ՎՐԱՅ, ՄԵԼԱՆՈՎ: ԿՏՈՐՆԵՐՈՒ ԶԲԱԺՆԵԼ ՁԵՌԱԳԻՐԸ:




ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

**HARATCH** Fondé en 1925 R. C. S. 376.286

Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN

17, Rue Damesme — PARIS (13)

վեցամս. 800 ֆր., Տար. 1600, արտ. 2500 ֆր.

Tél. GOB. 15–70 Գին 7 ֆր. C.C.P.Paris 1678–63

Jeudi 17 AOUT 1950 Հինգշաբթի 17 ՕԳՈՍՏՈՍ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6230–Նոր շրջան թիւ 1641

Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

# ԵՒՐՈՊԱԿԱՆ ԲԱՆԱԿ

Եւրոպական Խորհուրդին առջեւ, որ գումարուեցաւ անցած շաբաթ Սթրազպուրկի մէջ, Չըրչիլ առաջարկեց կազմել եւրոպական բանակ մը, պաշտպանելու համար Եւրոպա եւ արեւմտեան քաղաքակրթութիւնը՝ բոլշեւիկեան հաւանական արշաւանքի մը դէմ :

Թելադրեց նոյնիսկ, որ արեւմտեան Գերմանիան ալ զինուի եւ իր մասնակցութիւնը բերէ եւրոպական բանակին, քանի որ բոլշեւիկեան յարձակումը ամէնէն առաջ ուղղուած պիտի ըլլայ սահմանակից հողամասին վրայ :

Այս այն Չըրչիլն է, որ Ռուզվէլթի եւ ընկերներուն հետ ամէն աջակցութիւն ընծայեց Մոսկուայի եւ բազմաթիւ զիջումներ ըրաւ՝ ջախջախելու համար հասարակաց թշնամի Գերմանիան (յետագային նաեւ Ճափոնը) :

Ռուզվէլթ, Չըրչիլ եւ ընկ. բարեյուսօրէն համոզուած էին, որ բոլշեւիզմը բարեփոխուած էր եւ կարելի էր գործակցիլ անոր հետ ոչ միայն պատերազմի, այլ նաեւ խաղաղութեան ժամանակ :

Չէ՞ որ Կոմինտէրնը պաշտօնապէս ջնջուած էր, բոլշեւիկեան գաղափարախօսութիւնը դըրուանի տակ դրուած, «Հայրենիք»ը վտանգի տակ յայտարարուած եւ «հայրենական պատերազմ» հռչակուած, կրօնքն ու եկեղեցին ի պատուի դարձած : Մէկ խօսքով «բուրժուայացած» :

Եւ սակայն հազիւ անհետացած գերմանական վտանգը, Մոսկուան վերադտաւ իր իսկական դիմագիծը եւ երէկուան դաշնակիցը դարձաւ թըշնամի :

Այսօր բոլշեւիզմի ամէնէն ոխերիմ հակառակորդներն են Ռուզվէլթի յաջորդը Թրումըն, Չըրչիլ եւ ընկերները :

Նոյնիսկ Հէնրի Ուոլըս, որ դեռ մինչեւ երէկ Ստալինի գովքը կը հիւսէր, հիասթափուած՝ հրաժարեցաւ «Յառաջդիմական» կուսակցութեան նախագահութենէն, երբ տեսաւ որ Մոսկուա խաղաղութիւն քարոզելու դիմակին տակ ազգամիջեան պատերազմ կը հրահրէ :

Քորէայի պատերազմը շատ ծանր ազդանշան մը եղաւ՝ ժողովրդավար երկիրները սթափեցնելու եւ լուրջ գործի մղելու համար :

Տարիներ առաջ վտանգը տեսեր էին արդէն եւ ձեռնարկներ կատարած արեւմտեան աշխարհը պաշտպանելու համար խորհրդային արշաւանքի մը դէմ :

Ատլանտեան Ուխտը, Պենելիւքսը, Ֆոնթէնպլոյի Զինուորական Գերագոյն Սպայակոյտը, Մարշըլի ծրագիրը, Եւրոպայի սպառազինումը Ամերիկացիներուն կողմէ ուրիշ բանի չէին ձգտիր, եթէ ոչ թումբ մը կանգնեցնելու բոլշեւիկեան աշխարհակալութեան առջեւ՝ Եւրոպայի մէջ:

Ու ահա՛ եւրոպական բանակի ծրագիրը :

Արեւմուտքը շատ լաւ հասկցած է այժմ թէ ի՛նչ կը ծրագրէ Քրէմլին :

Այն միջոցին, երբ Կոմինֆորմի հրամանով եւ «Սթոքհոլմի Կոչը» անունին տակ միլիոնաւոր ստորագրութիւններ կը հաւաքուին խաղաղութեան համար, Մոսկուա մահացու հարուած մը կուտայ խաղաղութեան՝ պատերազմի նոր հնոց մը արծարծելով Ծայրագոյն Արեւելքի մէջ, ուր արդէն եղբայրասպան եւ ազգամիջեան կռիւները աւերներ կը գործեն տարիներէ ի վեր, Մոսկուայի դրդումով եւ աջակցութեամբ :

Եւրոպական բանակ մը կազմելու մասին Չըրչիլի առաջարկը անգամ մը եւս կը չեշտէ թէ վըտանգը ծանրացած է եւ հասած արեւմտեան Եւրոպայի դուռները եւ թէ կորսնցնելիք ժամանակ չկայ այլեւս :

Արեւելք եւ Արեւմուտք կանգնած են դէմ դէմի : Ուժերու համեմատութիւնը 1ի դէմ 6—7 կը հաշուեն :

Ահա՛ Քորէան՝ իբրեւ փաստ :

Ուշ կ'արթննայ Արեւմուտքը : Ժամանակ պիտի ունենա՞յ պատրաստուելու եւ զսպելու «խաղաղասէր»ներու արշաւանքը Եւրոպայի վրայ, որ իսկապէս խաղաղութեան կը կարօտի՝ անհուր պատերազմի մը բացած վէրքերը դարմանելու եւ վերականգնելու համար :

Ծանր մղձաւանջի մը տակ կ'ապրի բովանդակ մարդկութիւնը՝ երկաթեայ վարագոյրէն ներս թէ դուրս :

Բռնակալ վարչաձեւի տակ հեծող երկիրներու ժողովուրդները քրիստոնէական համբերատարութեամբ կը տանին իրենց խաչը, ապագայ ազատութեան յոյսն ունենալով իբրեւ միակ մխիթարութիւն եւ զօրավիգ :

Երկաթեայ վարագոյրէն դուրս մնացող եւ ազատ ու իսկապէս ժողովրդավար վարչաձեւի տակ ապրող ազգերը՝ ի տես աշխարհի կէս մասին ստրկացման՝ սկսած են ահաբեկիլ եւ ինքնապաշտպանութեան միջոցներ կ'որոնեն, քանի դեռ ուշ չէ :

Ու անձկագին կը սպասեն խաղաղութեան աւետաբեր աղաւնիին, որ միանգամ ընդ միշտ պիտի փարատէ՝ համաշխարհային երրորդ պատերազմի մը մղձաւանջը :

Բովանդակ մարդկութիւնը կարօտ է խաղաղութեան եւ ոչ թէ եւրոպական բանակի :

ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

# ՔՈՐԷԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Կատաղութեամբ կը շարունակուի պայքարը : Երկու կողմերը կը դիմադարձեն կարելի ուժգնութեամբ : Կացութիւնը սակայն կը ծանրանայ Ամերիկացիներուն համար : Թաէկուի ճակատին վրայ կարմիրները գետը անցան եւ հաստատեցին երկու կամրջագլուխ, նոյն տեղէն 25—30 քիլոմեթր հեռու հարաւ արեւելք եւ հիւսիս արեւելք : Հիւսիսէն եկող զրահապատ զօրասիւն մը խուճապահար պարտութեան մատնեց հարաւային Քորէացիները եւ հասաւ Թաէկուէ 20 քիլոմեթր հեռու : Իսկ Նաքթոնկի ճակատին վրայ կարմիրները յաջողեցան կասեցնել Ամերիկացիներու հակայարձակումը եւ իրենց կամրջագլուխը լայնացուցին տասը քիլոմեթր :

× Ամերիկեան զօրախումբ մը յաջողած է ցամաք ելլել հիւսիսային Քորէա եւ օդը հանած է Շնկժինի նաւահանգիստին մօտը գտնուող երկաթուղիի գետնուղի մը որ 135 քիլոմեթր հեռու կը գտնուի Խորհրդային Միութեան սահմանագլուխէն : Այս գետնուղին կ'ընդհատէ երեք կարեւոր գիծերու որ կը միացնեն հիւսիսային Քորէան Մանջուրիոյ եւ Խորհրդային Միութեան Խաղաղական Ովկէանոսի ծովեզերեայ նահանգներուն :

× Ամերիկեան հրամանատարութեան մէկ տեղեկագրին համաձայն, անցեալ մէկ ամսուան միջոցին ամերիկեան օդանաւերը 7000 թոն ռումբ նետած են թշնամի նաւային կայաններու եւ գործարաններու վրայ :

× Ամերիկացիներու մէկ տեղեկագրին համաձայն ցարդ բռնուած հիւսիսական գերիները բոլորն ալ Քորէացիներ են :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԷԼԻԶԱԲԷԹ ԻՇԽԱՆՈՒՀԻՆ, Անգլիոյ գահաժառանգը, երեքշաբթի առտու ժամը 11.50ին աղջիկ մը աշխարհ բերաւ : Նորածինը կը կշռէ 2 քիլօ 718 կրամ : Այս դէպքը հասարակութեան ծանուցուեցաւ թնդանօթի 103 հարուածներով :

ԱՀԱՐԿՈՒ երկրաշարժի մը նշանները արձանագրեցին երեքշաբթի օր աշխարհի շատ մը դիտարաններուն շարժագիրները : Դեռ յայտնի չէ թէ ո՛ւր պատահած է այս աղէտը : Կը կարծուի որ Հնդկաստանի մէջ է :

ՖՐԱՆՍԱՅԻ կողմէ Միացեալ Նահանգներու տրուելիք երկրորդ ծանուցագիրը որ կը վերաբերի Եւրոպայի պաշտպանութեան խնդիրներուն, գաղտնի պիտի պահուի :

ՊԵԼՃԻՔԱՅԻ դահլիճը կազմեց Պ. Վան Զէլանտ, բայց վարչապետութիւնը յանձնուեցաւ կաթոլիկ ծերակուտական Պ. Ֆոլիէնի :

ՃԱՓՈՆԻ հետ հաշտութեան դաշնագրի մը նախագիծը պատրաստած է ամերիկեան կառավարութիւնը որ պիտի հաղորդուի Անգլիոյ եւ Ֆրանսայի կառավարութեանց :

ՄԱՐԷՇԱԼ ԹԻԹՕ հնդկական թերթի մը թղթակցին յայտարարեց թէ Եուկոսլաւիա չպիտի մասնակցի ոեւէ պատերազմի, մինչեւ որ իր վըրայ յարձակում չգործուի :

ԵԳԻՊՏՈՍԻ Ֆարուք թագաւորը որ անպաշտօն կերպով կը ճամբորդէ, հասաւ Մարսէյլ եւ մեկնեցաւ Տովիլ, ուր Կոլֆ պանդոկին մէջ իրեն վերապահուած են 21 սենեակ :

# Ազգերու ժողովին մէջ

## ՄԱԼԻՔԻ ՆՈՐ ՅԱՐՁԱԿՈՂԱԿԱՆԸ

Ազգերու Միութեան ապահովութեան խորհուրդին նոր նիստը տեղի ունեցաւ երկուշաբթի օր նախագահութեամբ խորհրդային պատուիրակ Պ. Ժաքով Մալիքի : Էքուաթորի եւ Նորվեկիոյ պատուիրակները բողոքեցին խորհրդային պատուիրակին բռնած ընթացքին դէմ որով կը ձգձգուին խնդիրներու լուծումը օրինական ձեւով եւ համայնավար քարոզութիւն կը կատարէ : Հնդկաստանի պատուիրակ սըր Պէնէկըլ Րաու առաջարկեց կազմել վեց անդամներէ բաղկացած մասնախումբ մը որ ուսումնասիրէ բոլոր առաջարկները «խաղաղ եւ արդար» կերպով լուծելու համար Քորէայի խնդիրը, եւ բերէ իր տեղեկագիրը ժողովին : Այս մասնախումբին իբր անդամ առաջարկեց Էքուաթորի, Հնդկաստանի, Նորվեկիոյ, Եուկոսլաւիոյ, Քուպայի եւ Եգիպտոսի պատուիրակները :

Ֆրանսական պատուիրակ Պ. Նովէլ կոչ մը ուղղեց խորհրդային պատուիրակին որ դադրի անդամալուծելէ ժողովը : Երբ Պ. Մալիք վերադարձաւ ժողովի, ամէն ոք յուսադրուեցաւ թէ կարելի պիտի ըլլար համաձայնութեան մը գալ, բայց յուսախաբ եղանք իր ցոյց տուած ժխտական ընթացքին համար, որով կ'արդարացնէ նոյնիսկ ապօրինի նախայարձակումները :

Պ. Մալիք պատասխանեց .— Չեմ կրնար լուրջի առնել ֆրանսական եւ նորվէկիական պատուիրակներուն կոկորդիլոսի արցունքները, քանի որ անոնք դաշինքը բռնաբարեցին Քորէայի խնդրին մէջ որոշումներ տալով : Պատրանքի մէջ են անոնք որ կը կարծէին թէ խորհրդային պատուիրակը ժողովի պիտի գար երկու ձեռքով քուէարկելու համար Քորէայի դէմ յարձակման մը ի նըպաստ : Ըստ դաշինքի տրամադրութեանց ոեւէ անդամ ստիպուած չէ այս ժողովին բոլոր նիստերուն մասնակցելու : Խորհրդային պատուիրակը պէտք տեսաւ գալ նախագահելու հոս որովհետեւ իր կարգն էր եւ չէր ուզեր բռնաբարել կանոնագիրը : Մասնաւորելով խօսքս ֆրանսական պատուիրակին, կ'ըսեմ թէ, Ֆրանսա նոյն բանը կ'ընէ Վիէթ–Նամի մէջ, ինչպէս Ամերիկացիները Քորէայի մէջ :

Ժողովը այսօր կը շարունակուի :

Ապահովութեան Խորհուրդին շրջանակներուն մէջ համակրանքով ընդունուած է հնդիկ պատուիրակին առաջարկը Քորէայի խնդրի մասին : Նոյնիսկ ամերիկեան եւ անգլիական պատուիրակները համամտութիւն յայտնեցին քննել ամէն առաջարկ որ ապահովէ Քորէացիներու անկախութիւնն ու ազատութիւնը :

# Ընդդիմութիւն Ամերիկայի մէջ

Հանրապետական ընդդիմադիր կուսակցութեան պետ ծերակուտական Թէֆթ յայտարարեց թէ Թրումընի կառավարութեան քաղաքականութիւնը Ծայրագոյն Արեւելքի մէջ «հրաւէր» մը եւ բաց ճամբու նշան մըն էր հիւսիսային Քորէացիներուն յարձակելու հարաւին վրայ : Եթէ մեր զօրքերը պահէինք Քորէայի մէջ, պատերազմը տեղի չէր ունենար : Հիմա Միացեալ ազգերուն կ'իյնայ որոշել թէ պէ՞տք է հիւսիսայինները ետ մղել 38րդ զուգահեռականէն անդին :

Ծերակոյտի արտաքին յանձնաժողովին պատկանող չորս ուրիշ ծերակուտականներ ալ յայտարարութեան մը մէջ կը քննադատեն Թրումընի քաղաքականութիւնը, ըսելով թէ անիկա ազատ գործունէութեան հրաւէր մըն է ուղղուած Խորհրդային Միութեան : Նոյնիսկ լռելեայն կը մեղադրեն Ռուզվէլթը, Եալթայի եւ Փոցտամի համաձայնութեանց առթիւ, որու հետեւանքով 1945էն ի վեր Մոսկուայի համայնավարներուն առջեւ միշտ տեղի կը տրուի ինչպէս եղաւ Չինաստանի մէջ երէկ, Քորէայի առջեւ այսօր, Ֆորմոզայի համար վաղը :

Այս ծերակուտականները կ'առաջարկեն Միացեալ Ազգերու բացառիկ ընդհանուր ժողով մը հրաւիրել, փոփոխելու համար դաշինքը եւ սահմանափակելու վեթոյի իրաւունքին գործածութիւնը :

× Հանրապետական կուսակցութեան նախագահական թեկնածու Հարոլտ Սթասսէն առաջարկեց ազդարարութիւն մը ուղղել Ռուսիոյ, ըսելով որ «եթէ համայնավար ուժերը նոր պատերազմի մը ձեռնարկեն աշխարհի ոեւէ մէկ կողմը, կռիւը պիտի փոխադրուի ուղղակի Ռուսիոյ վրայ» :

Միւս կողմէ Փարիզի անգլիական նախկին դեսպան Տուֆ Քուփըր «Տէյլի Մէյլ» մէջ կը գրէ թէ պէտք է ազդարարել Մոսկուայի որ եթէ ոեւէ տեղ սկսած յարձակում մը չդադրեցնէ, ուղղակի իր վրայ պիտի նետուին հիւլէական «Նախըզգուշական» ռումբեր : Անօգուտ եւ անմարդկային է, կ'ըսէ, Քորէայի ժողովուրդը փճացնել հիւլէական ռումբերով, պէտք է պատասխանատուները զարնել ուղղակի սիրտէն :

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

# ՔՈՐԷԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

## ԱՄԵՐԻԿԱՑԻՔ ԿԸ ԲԱՐԵԼԱՒԵՆ ԻՐԵՆՑ ԴԻՐՔԸ

Քորէայի մէջ ամերիկեան եւ հարաւական զօրքերը կը շարունակեն ամրապնդել իրենց դիր-քերը: Թաէկուի վրայ հիւսիսականներու սպառ-նալիքը հեռացուած է, քանի որ երկու քիլոմեթր ետ մղուած են: Նոյնն է նաեւ Նաքթոնկի կարմիր կամրջագլուխին համար, իսկ հիւսիս արեւելեան կողմը, հարաւականները Փոհանկը առնելէ վերջը կը շարունակեն առաջացումը: Իսկ հիւսիսական-ները իրենց կարգին Մազանի հիւսիս-արեւելեան կողմը 20 քիլոմեթր առաջ քալած են :

× Հոնկ-Քոնկ գտնուող անգլիական հետե-ւազօրքերուն մէկ մասը Քորէայի օգնութեան պի-տի ղրկուի :

× Ամերիկացիները 165 միլիմեթրնոց օդային հռթիռներ սկսան գործածել որոնք կրնան ծակել 25 սանթիմեթր թանցրութեամբ զրահներն ան-գամ :

× Հիւսիսականներու մէկ զեկոյցին նայելով Օգոստոս 2էն 12, 5000 դաշնակից զօրք սպաննած եւ հազար գերի առած են: Իսկ Ամերիկացիներու հաշիւին նայելով, հիւսիսականները կորսուած են 50.000, իսկ հարաւականները 37.000 հոգի:

× Թուրքիայէն Քորէա ղրկուելիք զօրագուն-դին մեկնումը յետաձգուեր է, որովհետեւ Ամերի-կացիք պահանջեր են թէ «միաձոյլ» զօրագունդ մը ըլլայ, հակառակ պարագային օգուտ պիտի չու-նենայ » եղեր կը գրեն Թուրք թերթեր ը:

---

## ՓԱՆՏԻ ՆԷՀՐՈՒ ՓԷՔԻՆ ԿԸ ՀՐԱՒԻՐՈՒԻ

Չինաստանի կարմիր կառավարութեան պետ Մաէ Զէ Թունկ Փէքին հրաւիրեց հնդկական հան-րապետութեան վարչապետ Փանտի Նէհրու որ ընդունած է հրաւէրը, բայց դեռ մեկնումի թուա-կանը յայտնի չէ, քանի որ Նէհրու կ'ուզէ նաեւ Ամերիկա երթալ Միացեալ Ազգերու առջեւ դրա-ղելու համար Քորէայի խնդրին լուծման հարցով: Նէհրու Փէքին երթալ կ'ուզէ նաեւ որ խօսի Թիպէ-թի մասին, քանի որ համայնավար արշաւանքի վախ մը կայ այն կողմը :

---

## ԵՒՐՈՊԱՅԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐԸ

Այսօր Լոնտոնի մէջ կը գումարուի Ատլան-տեանի մաս կազմող պետութեանց արտաքին նա-խարարներու փոխանորդներուն ժողովը, որու մեծ կարեւորութիւն կ'ընծայուի, քանի որ պիտի զբա-ղի Եւրոպայի պաշտպանութեան խնդրով :

Յայտնի է որ այս մասին յուշագիրներ փոխա-նակուած էին, եւ Ամերիկայի պահանջումներուն դէմ Ֆրանսա պատասխանած էր որ ինք 15 զօրա-բաժին պիտի պատրաստէ,բայցԱմերիկա ալ պէտք է հինգ զօրաբաժին ղրկէ Գերմանիոյ գրաւման շրջանին մէջ: Թրումըն յայտնած էր որ 18 ամի-սէն առաջ այդ բանը կարելի չպիտի ըլլայ:

Այս ժողովին մէջ Ամերիկացիները պիտի ա-ռաջարկեն թէ մինչեւ որ Ատլանտեանի բոլոր եր-կիրները իրենց ինկած բաժին զօրաշարժը չկատա-րեն, Ամերիկա զօրք չպիտի ղրկէ Եւրոպա:

Չըրչիլի առաջարկը՝ եւրոպական բանակ մը կազմելու մասին ընդունելի չէ: Եւրոպայի եւ Ա-մերիկայի պաշտպանութիւնը մէկ է, որով Ատ-լանտեանի երկիրները պէտք է միասին կազմեն այդ բանակը որու հրամատարը ամերիկացի պիտի ըլլայ :

Նաեւ կարեւոր է արեւմտեան Գերմանիոյ զի-նումը , նախապէս ընդունելով Շումանի ծրագի-րը տնտեսական գործակցութեան մասին: Անգլիա վերապահ է այս մասին :

× Փորթուկալի կառավարութիւնը յայտարա-րեց որ խորհրդային յարձակման մը պարագային պատրաստ է հինգ զօրաբաժին, այսինքն 80.000հո-գի ղրկել ռազմաճակատ :

---

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԳԻՊՏՈՍԻ Ֆարուք Թագաւորը Տովիլի մէջ հետաքրքրութեան առաջին առարկան է: Թէեւ լսուեցաւ թէ հոն պիտի կատարէ իր ամուսնու-թիւնը՝ իր նշանածին Օր. Նարրման Սատեթի հետ, բայց իր շուրջինները կը հերքեն եւ կ'ըսեն թէ Թագաւորը իր ամուսնութիւնը պիտի կնքէ Ե-գիպտոսի մէջ: Ֆարուք Թագաւոր անցեալ օր կա-զինոյին մէջ պաճարայէն չահեցաւ 7 միլիոն Ֆր.: Նոյն խաղարանը մինչեւ այս կիրակի 330 միլիոնի գործառնութիւն ըրած է, անցեալ տար-ուան վրայ 113 միլիոն աւելի: Եւ կ'ըսեն թէ գոր-ծերը գէշ կ'երթան ...:

ԱՐԱԲԱԿԱՆ Միութեան քաղաքական յանձնա-ժողովը իր վերջին նիստին մէջ որոշեց պնդել Ե-րուսաղէմի միջազգայնացումին վրայ: Նաեւ ո-րոշեց որ Լիբանան յաջորդէ Եգիպտոսի՝ միաց-եալ ազգերու ապահովութեան խորհուրդին իբր անդամ: Յայտնի է որ այս աթոռին թեկնածու է Թուրքիա, բայց Արաբները կ'ընդդիմանան :

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԲԱՑՈՒՄ

1944 Օգոստոս 25ին, Կարտան - Պիվէռի մէջ եղբայրասպան գնդակով վատօրէն նահատակ-ուած, յաւէտ ողբացեալ՝ ընկեր ԼԵՒՈՆ ԳԵՂՈՒ-ՆԻԻ Յուշարձանին :

Տեղի կ'ունենայ 3 Սեպտ. կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, Կարտանի գերեզմանատան առ-ջեւ:

Հաւաքավայր գերեզմանատան առջեւ :

Կարտանի Հ. Յ. Դ.ի կողմէ բացման խօսք ընկեր Հ. ԱՒԵՏԻՍԵԱՆ : Կը խօսի նաեւ Կարտանի S. F. I. O.ի ներկայացուցիչը :

Նոյն օրը առաւօտեան ժամը 8ին հոգեհան-գստեան պատարագ, Պիվէռի Հ. Յ. Դ. Գեղունի տան մէջ: Կը պատարագէ ՀԱՅՐ ԲԱԲԿԷՆ ԱՍԼԱՆ-ԵԱՆ: Կը հրաւիրուին հանգուցեալ ընկերոջ յիշա-տակը յարգողները :



## ԳՈՐԾԻ ՄԱՐԴՈՑ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

### ՔԱՆԻ ԱԺԱՆՍՆԵՐՈՒ ՋԵՌՔ ՉԷ ԱՆՑԱԾ

Իսիի համբաւաւոր սրճարանը (Café des Sports) իր ազատ սրահով եւ ամբողջ բնակարանով հիմ-նովին ծախու է, ունի թէլէֆօն, կազ, ջուր, լոյս եւ կեդրոնական ջերմութիւն: Մանրամասնութեան համար ,կամ ներկայանալ եւ կամ հեռախօսել ուղ-ղակի տիրոջ՝ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ, 4 rue de la Défense, Իսի, Tél. Mic. 37.03:


**Imprimerie DER AGOPIAN** , 17 rue Damesme – (13)

Le Gérant : A. NERCESSIAN


## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէի ընկերական ժողովը այս չորեքշաբթի ժամը 8.30-ին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայու-թիւն: Ներկայ կ'ըլլայ ընկեր Բժիշկ Ե. Խաքա-նասեան :

